# ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ:

ՀԱՍՑԵՆ՝ 375015, ԵՐԵՎԱՆ 15, ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՓՈՂՈՑ № 15: ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96, 56—43—38:

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

Լույս է տեսնում 1923 թվականից


## Այս համարում 11•87




*Հանձնված է արտադրության 18.09.87 թ.: Ստորագրված է տպագրության 12.11.87 թ.: ՎՖ 09526: Թուղթ օֆսեթ, 70×100 1/16: Տառատեսակը՝ Նորք: Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ., 3,9 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 66532: Պատվեր՝ 1809: Գինը՝ 15 կոպ.:*

*Տպագրված է ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարանում, Օրջոնիկիձեի պողոտա 2:*

Сдано в набор 18.09.87 г. Подписано к печати 12.11.87 г. Формат 70×100 1/16. ВФ 09526. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печать. 2,92 усл. печ. листа, 3,0 уч.-изд. листа. Тираж 66532. Заказ 1803. Цена 15 коп.

Напечатано в типографии изд-ва ЦК КП Армении, пр. Орджоникидзе, 2.

Շապիկի 1-ին էջին՝ գործ ՄԱՐՏԻՐՈՍ ՍԱՐՅԱՆԻ


ԿԱՐԵՆ ՍԻՄՈՆՅԱՆ

# ԿՐԱԿԸ, ՈՐ ԱՅՐԵԼ ԷՐ ՆՐԱՆՑ...

Ծանր ժամանակներ էին: Խորհուրդների երիտասարդ հանրապետության վրա կախվել էր մահացու վտանգ: Հարավային ռազմաճակատով մեկ՝ Մոսկվայի վրա էր գրոհում գեներալ Դենիկինի բանակը:

«Վրա է հասել սոցիալիստական հեղափոխության ամենաճգնաժամային պահերից մեկը, ամենայն հավանականությամբ՝ նույնիսկ ամենաճգնաժամային պահը»— այդ օրերին գրել է Լենինը:

Հենց այդ ճգնաժամային օրերին էր, ավելի ճշգրիտ՝ 1919 թվականի օգոստոսի 31-ին, երբ գեներալ Մամոնտովի ըսպիտակգվարդիական հեծյալ զորքը, կոտրելով կարմիրբանակայինների դիմադրությունը, ներխուժեց Ելեց քաղաքը:

Աթոռանիստ ընտրելով դատարանի երկհարկանի շենքը, Մամոնտովը քաղաքը գրավելու մասին լուրը շտապեց հայտնել Դենիկինին: Այնուհետև նրան զեկուցեցին, որ կայարանում գերի վերցված կարմիրբանակայինների մեջ է 13-րդ բանակի 42-րդ հետևակային գումարտակի կոմիսար Ալեքսանդր Վերմիշևը:

Գեներալ Մամոնտովը գոհունակ մի ժպիտով, գուցե և քթի տակ մռլտացնելով դեռևս Պետերբուրգում գնչու երաժիշտներից լսած «Սև աչքեր», Очи черные) երգը, համհարզին հրամայեց, որ կարմիրբանակային կոմիսարին բերեն հարցաքննության: Այո, այո... նա որոշել էր անձամբ հարցաքննել Ալեքսանդր Վերմիշևին, որի անունը հայտնի էր ծառայ-

կան բանաստեղծություններից: Ի դեպ, այդ բանաստեղծությունների մեջ կային մի քանիսը, որ հասցեագրված էին անձամբ իրեն՝ գեներալ Մամոնտովին: Այնպես որ, այդ պահերին դժվար էր ասել՝ գեներալը գոհունակ ժպտում էր Ելե՞ցը գրավելու, թե՞ այն պատճառով, որ իր ձեռքն է ընկել Վերմիշևը:

... Կազակները աթոռանիստի բակում ձիուց իջեցրին կապկպված, մտրակահեծ և գիտակցությունը կորցրած կոմիսարին: Հարցաքննությունը սկսելու համար Մամոնտովը հրամայեց ջուր շաղ տալ և ուշքի բերել գերուն:

Ալեքսանդր Վերմիշևը պղտորված հայացքով նայեց շուրջը, տեսավ կազակներին, տեսավ գեներալին, տեսավ երկինքը, իրիկնային երկինքը, ուր ճերմակ ամպերի եզրերը կարմրել էին մայր մըտնող արևի վերջին ճառագայթների տակ: Հեռու-հեռու մի տեղից նա լսում էր գեներալի հարցերը: Լսում էր, բայց չէր խոսում... Միայն չարչարված մարմինն էր երբեմն-երբեմն ցնցվում մտրակի կամ հրացանի մետաղե շամփուրի կտրուկ հարվածներից:

Ասում են, որ այդպիսի պահերին, երբ կյանքի վերջին նշանները սկսում են մարմրել, մարդու հիշողության մեջ և հայացքի դիմաց արագորեն կենդանանում են անցած տարիները, դեպքերը, դեմքերը...

... Ընդամենը երկու օր առաջ, օգոստոսի 29-ին, լրացել էր Ալեքսանդր Վերմիշևի քառասուն տարին:

Ի՞նչ հիշողություններ էին ծնվում նրա բորբոքված ուղեղում: Ի՞նչ դեպքեր էին հաջորդում իրար՝ շարժանկարի պես: Իսկ դեպքե՞րը... Ովքե՞ր էին նրանք...

Արդյո՞ք այդ պահերին նա տեսնում էր իր փառավոր նախնիներին, որոնք գալիս էին հայ ժողովրդի պատմության դարավոր խորքերից: Լսո՞ւմ էր արդյոք զենք ու զրահի շառաչը՝ թուրքական ու պարսկական ռազմադաշտերում: Թե՞ բորբոքված նրա ուղեղը երազային պատրանքներ էր ուրվագծում ազատ Հայաստանի մասին... Չէ՞ որ ընդամենը մի քանի տարի առաջ կրտսեր եղբորը՝ Լևոնին գրած մի նամակում հորդորել էր. «Նախապատրաստվիր ապագա ազատ Հայաստանի գործիչը լինելու, այն Հայաստանի, որ ինքն է նվաճելու իր ազատությունը»:

Բայց ո՞վ գիտե, գուցե կյանքի վերջին պահերին նա տեսնում էր նախնիների



Ա. Վերմիշև, 1911 թ.




«Կարմիր ճշմարտություն» պիեսի անվանաթերթը, 1920 թ.

երկի՞րը՝ Հայաստանը, որտեղ եղել էր հեռու-հեռավոր մանկության տարիներին... Քանի՞ տարեկան կլիներ... Ե-րե՞ք... Իհարկե, երեք: 1882 թվականին էր, երբ հորը՝ Պետերբուրգի անտառային ինստիտուտի նորավարտ մասնագետին աշխատանքի ուղարկեցին Հայաստան:

Բայց այն ժամանակ Հայաստան գոյություն չուներ: Հայաստանի յուրացված հատվածը թագավոր-կայսեր կամքով ու հրամանով բաժանվել էր աշխարհագրական շրջանների: Եվ հայր Վերմիշևը գրեթե հինգ տարի տնօրինություն էր անում Երևանի, Վաղարշապատի, Նախիջևանի գավառների անտառային տնտեսություններում:

... Կանցնեն տարիներ, և մանկության օրերի Հայաստան երկրի կարոտը շարունակ կմնա Վերմիշևի հոգում: Եվ երբ նրան լուրեր հասնեն նաև ջարդերի ու կոտորածների մասին, որոնք կազմակերպվում էին մանավանդ թուրքական կայսրության մեջ՝ իրավազուրկ և ստրկացված հայերի նկատմամբ, նա գրելու էր իր բանաստեղծություններից մեկում. «Բազմաչարչար իմ ժողովուրդ, և քեզ՝ Արարատի հովիտ, հղում եմ մարտնչող ռազմիկի իմ օրհներգությունը»:

Այնուհետև... այնուհետև ուսանողական տարիները Պետերբուրգի համալսարանի իրավաբանական ֆակուլտետում:

Բազմաշնորհ պատանին, որը սիրում էր բանաստեղծություններ գրել և ջութակ նվագել, սիրում էր զբաղվել նկարչությամբ և հրապուրված էր թատրոնով, որը տարված էր գիտությամբ և ժամանակ էր գտնում տեխնիկական գյուտեր ևս անելու, դառնալու էր իրավաբան... Բայց որպես լիարժեք մարդ, նա չէր կարող հանդուրժել մարդկային իրավունքի մասնագիտությունը միայն տեսականորեն: Ուստի, բնավ էլ պատահականություն չէր, որ նա գործնականում ևս նվիրվեց ռուսական ցարիզմի կողմից նվաճված ազգերին, նաև հայ ժողովրդին, ազատագրություն բերելու հեղափոխական գործունեությանը:

«Թանկագին հայրիկ»,— գրել է նա նամակներից մեկում:— Շուտով կսկսվեն դասախոսությունները, հավանաբար կսկսվեն նաև հավաքույթները: Երբ իմ այս տողերը կարդալիս լինես, ակամայից գուցեև հիշես նաև քո ուսանողական տարիները: Ի՞նչ ապրումներ ունեիր, երբ առաջին անգամ գնացիր ուսանողական հավաքույթի, երբ առաջին անգամ զանց առար օրենքը: Զանց առար գիտակցորեն, զգալով, որ արդար ես և բաց աչքով ես նայում վտանգին»:

Ուսանողական հավաքների և ցույցերի մասնակցելու համար Պետերբուրգի քաղաքապետի հրամանով Վերմիշևին պարտավորեցրին մեկնել Կովկաս, այսպես ասած՝ «ազատ աքսորի»: Բայց նա որոշեց մնալ Պետերբուրգում և անցավ ընդհատակյա բոլշևիկյան քարոզչական աշխատանքի: Ոստիկանության հետապնդումներից նա թաքնվում էր մայրաքաղաքի արվարձանում: Հենց այստեղ էլ ծանոթացավ գնչուական երգչախմբի ղեկավար Վասիլի Աբաուրովի հետ, որը հովանավորում էր երիտասարդին և ազատ ժամերին սովորեցնում յոթլարանի կիթառ նվագել:

Աբաուրովի խումբը ելույթներ էր ունենում բանվորների, նավաստիների, նավահանգստային բեռնակիրների համար, և Ալեքսանդր Վերմիշևն էլ հաճախ միանում էր երաժիշտներին ոչ միայն գործունեություն ծավալելու, այլև համերգներին մասնակցելու նպատակով: Հենց այդ շրջանում էլ նա մի քանի երգեր հորինեց Աբաուրովի խմբի համար: Դրանցից մեկն էլ «Սև աչեր» երգն էր, որը որպես գնչուական երգ՝ արագորեն տարածվեց երկրով մեկ:

... Հեղափոխական ընդհատակյա աշխատանքը Ալեքսանդր Վերմիշևին հասցրեց մինչև Կարալեկան պարանոցում գտնվող հինավուրց Թերիոքներ քաղաքը, որտեղ Լենինի ղեկավարությամբ տեղի էր ունենում կուսակցական ժողով: Այդ նշանավոր ժողովին Վերմիշևը գնացել էր մտերիմ ընկերոջ ու գործակցի՝ Սարգիս Սրապիոնյանի հետ, որի կուսակցական ծածկանունը Լուկաշին էր, Սարգիս Լուկաշին:

Լենինի հետ այս առաջին հանդիպումը պայծառ տպավորություն գործեց երիտասարդ հեղափոխականի վրա: Եվ հենց այդ հանդիպման տպավորությամբ էլ նա վճռեց գրել «Հանուն ճշմարտության» թատերգությունը, որի նյութը 1905 թվականի հունվարի 9-ի՝ «արյունոտ կիրակիի» դեպքերն էին: Տարիներ կանցնեն և արդեն հեղափոխության հաղթանակից հետո Ալեքսանդր Վերմիշևը կգրի «Կարմիր ճշմարտության» թատերգությունը, որը ոչ միայն կընդունվի որպես հեղափոխական դարաշրջանի գեղարվեստա-

կան յուրօրինակ փաստաթուղթ և խորհրդային շրջանի առաջին թատերգություններից մեկը, այլև կբեմադրվի Պետրոգրադի բանվորական թատրոնում, Մոսկվայում, Կրոնշտադտում, Ելիզավետգրադում, Ռոստովում, Եկատերինոսլավում և այլուր:

Հեղափոխական, գրական, երաժշտական գործունեությանը զուգընթաց Ալեքսանդր Վերմիշևը զբաղվում էր նաև տեխնիկական գյուտարարությամբ: Նա ստեղծեց զսպանակավոր մեխանիկական ածելի և իր այդ գյուտի համար արտոնագիր ստացավ: Ազատ ժամերին ջանասիրաբար աշխատում էր ինքնաշխատ հեռախոսակայան հորինելու և ձայնագրիչ մեքենայի նոր կառուցվածք մշակելու ուղղությամբ: Բայց ամենից հետաքրքիրն այն է, որ մեզ համար շատ սովորական, ամեն տանը գտնվող էլեկտրական զանգի գյուտարարը ևս Ալեքսանդր Վերմիշևն է: Դարասկզբին այդ նորությունը արագորեն տարածվեց Պետերբուրգում, Մոսկվայում և Ռուսաստանի մյուս քաղաքներում: 00144 արտոնագիրը, որ նա ստացավ էլեկտրական զանգի գյուտի համար, խոշոր եկամուտ բերեց: Այդ գումարը նա ամբողջությամբ մուծեց բոլշևիկյան կուսակցության դրամարկղ:

Որքան հաջողակ էր նա գյուտարարության, երաժշտության մարզերում, նույնքան «ձախորդ» էր գրականության մեջ: Եվ դա բնական էր: Ցարական կառավարությունը երբեք թույլ չէր տա, որ Ալեքսանդր Վերմիշևը հրապարակի իր թատերգությունները: Բայց նա ընկերների ու հարազատների դրամական օգնությամբ թատերգություններից մեկը տպագրեց մասնավոր տպարանում և ձեռամբ տարածեց մայրաքաղաքի գրախանութներում:

Այսպիսով կատարվեց աներևակայելին ու անհնարինը:

Մոլեգնած հետադիմության ամենադաժան շրջանում ռուսական միապետության մայրաքաղաքում հայտնվեց մի ըստեղծագործություն, որը բացեիբաց մերկացնում էր ինքնակալության կազմակերպված հունցագործությունները: Եվ շատ չանցած պետերբուրգյան թերթերից մեկի «Դատական քրոնիկոն» բաժնում լույս տեսավ հետևյալ լուրը.

«Սանկտ-Պետերբուրգի համալսարանի ուսանող Ալեքսանդր Վերմիշևը դատապարտվել է մեկ տարվա բանտար-



Ընտանեկան թատրոնում



Վերմիշևի անվան պիոներական դրուժինա ք. Ելցա, 1972 թ.



Վերմիշևին նվիրված ցուցահանդես Դոնի-Ռոստովի № 84 դպրոցում 1972 թ.

կության այն բանի համար, որ իր գրած ու հրատարակած «Հանուն ճշմարտության» թատերգության գործող անձանց բերանով արտահայտել էր դատողություններ, որոնք ըմբոստության և գոյություն ունեցող պետական կարգերը տապալելու կոչ էին անում:

Դեկտեմբերի 12-ին քննարկվեց դատապարտյալի վճռաբեկության գանգատը... և թողնվեց անհետևանք»:

Այնուհետև պետք է շարունակվեին նրա բանտարկությունները, որոնք ընդհանրապես հեղափոխական գործիչների «սովորական առօրյան» են: «Բանտերում մենք սովորում էինք մարքսիզմ, հեղափոխական շարժման պատմություն և այլն: Այս իմաստով շատ-շատերը բանտերում պարապ չէին նստած»— մի առիթով հիշել է Լենինը: Բանտախցում ինքնուսուցմամբ էր զբաղվում նաև Ալեքսանդր Վերմիշևը: Ահավասիկ մի քանի դրվագ բանտից գրած նրա նամակներից.

«Օրերով ֆրանսերեն եմ պարապում: Կարդում եմ... Խնդրում եմ, հողագործական հարցերին նվիրված մի քանի գիրք ուղարկեք... Տառապում եմ օգոստոս-հոկտեմբերին բանտարկության ժամանակ սկսված հոդացավերից:

Սանկտ-Պետերբուրգ, փետրվար, 1906
թվական, բանտախուց 739»:

«Ինձ դատապարտել են մեկ տարվա բանտարկության: Դատարանից բերեցին ուղիղ բանտախուց, այնպես որ, չհասցրի նույնիսկ ուշքի գալ: Տրամադրությունս այնպիսին է, ասես ինձ արդուկած լինեն:

Սանկտ-Պետերբուրգ, հոկտեմբեր, 1908
թվական, բանտախուց 20»:

«Իմ խցի հատակը տախտակից է, այնպես, որ, հոդացավս չի սաստկանա... Կարող եմ պարծենալ նույնիսկ ինքըս իմ առաջ. չէի կարծում, թե նման սառնասրտություն կունենամ:

Միայն թե քո դիմաց առկայծի աստղը, միայն թե նպատակ լինի և սեփական ուժերի նկատմամբ՝ հավատ... Գըրքերով ու մտքերով կարելի է երկար նըստել, միայն թե առողջ լինես և ինքդ քեզ հավաքելով բռիդ մեջ՝ դատարկ բաների վրա չծախսես նյարդերդ:

Սանկտ-Պետերբուրգ, ապրիլ, 1909
թվական, բանտախուց 300»:

Եվ ես հավատում եմ, կարելի է ասել, որ նույնիսկ վստահ եմ, որ բանտախցի միայնության մեջ Ալեքսանդր Վերմիշևին հաճախ էր այցելում Մանկությունը: Եվ ես նրա և իր մանկության հանդիպումները, չգիտեմ ինչու, պատկերացնում եմ այսպես...

ՎԵՐՄԻՇԵՎ. Զարմանալի տեղ է մենախուցը: Շարունակ հետաքրքիր գաղափարներ են ծնվում և հանդուգն մըտքեր: Եվ, անշուշտ, ծնվում է ամենից հանդուգն միտքը՝ ազատությունը: Իսկական ազատությունը տարբերվում է թվացյալից... Հըմ... Մենախցից դուրս ես գալիս և հայտնվում բանտում: Դուրս ես գալիս բանտից և հայտնվում ավելի մեծ բանտում: Հետևաբար, գլխավորը այս բանտից ազատվելը չէ: Ավելի կարևորը թըվացյալ ազատությունից ազատվելն է... Բայց եթե մարդիկ ստանան այդ ազատությունը, դարձյա՞լ հետաքրքիր մտքեր ու գաղափարներ կծնվեն նրանց փոքրիկ ուղեղներում: Հեյ... Վերակացու... Նըկարչական տետրակ բերեք և ածուխ: Ես պետք է նկարեմ իմ հիշողությունները: Գուցեև ինքս ինձ նկարեմ: Հիշողությամբ: Հետաքրքիր բան կլինի: Ինքնանկար՝ հիշողությամբ: Իսկապես որ սքանչելի գյուտ է այս մենախուցը...Կարող եք չկասկածել... Այս գյուտն էլ անպայման որևէ բանտարկյալ արած կլինի...

Դուռը բախում են, զգույշ, անվստահ:

Ո՞վ է: (Ավելի բարձր): Ո՞վ է...

ՄԱՆԿՈՒԹՅՈՒՆ. (Լույսի շողի պես հայտնվելով զնդանում, կանգնում է թախտից ոչ հեռու): Ես եմ: Բարև... Եկել եմ հարցնելու. ո՞նց են գործերդ բանտում:

ՎԵՐՄԻՇԵՎ. Ինչպե՞ս մտար այս զընդանը:

ՄԱՆԿՈՒԹՅՈՒՆ. Քեզ հետ: Մենք միշտ միասին ենք: Մարդիկ շատ հազվադեպ են բաժանվում իրենց մանկությունից:

ՎԵՐՄԻՇԵՎ. Բայց դու կարող էիր ավելի հարմար ժամանակ ընտրել այցելության համար:

ՄԱՆԿՈՒԹՅՈՒՆ. Դժգո՞հ ես... Ուզում ես, որ գնա՞մ... Ի՞նչ կա որ... (Մոտենում է): Բայց առանց ինձ դու կկորչես: (Նստում է թախտի ծայրին): Որովհետև ես քո հիշողությունն եմ: Եվ քո

խիղճն եմ... Եվ քո կարոտը...
ՎԵՄԻՇԵՎ. Մի մոռացիր, որ ես էլ քո ապագան եմ: Համկանո՞ւմ ես: Քո վաղվա օրն եմ:
ՄԱՆԿՈՒԹՅՈՒՆ. Առանց հիշողության, առանց խղճի ու կարոտի ի՞նչ ապագա: Ոչ մի ապագա չի կարող լինել, որովհետև կկորչի կապը: Շղթան կկտըրվի, կընդհատվի, կվերջանա... Դու կարոտո՞ւմ ես ինձ...
ՎԵՐՄԻՇԵՎ. Կարոտում եմ: Հատկապես՝ երբ ծանր հոգսեր են ծնվում...երբ քիչ է մնում հուսահատություն պատի ինձ... երբ հանկարծ կորցնում եմ ինքնավստահությունս.:. Այդ պահերին ոչ միայն կարոտում, այլև ուզում եմ, որ ինձ հետ լինես կամ, ավելի ճիշտ, ես լինեմ դու... Ուզում եմ բղավել, որ ինձ վերադարձնեն իմ մանկությունը...
ՄԱՆԿՈՒԹՅՈՒՆ. Շուտով դուրս կգաս բանտից ու հոգսերդ կվերանան: Նորից կդառնաս ուժեղ և ինքնավստահ:
ՎԵՐՄԻՇԵՎ. Չկարծես, թե բանտում նստելն է սիրտս մաշում... Բանտ նստելը մի շատ սովորական իրականություն է, որի հետ հաշտվում եմ:
ՄԱՆԿՈՒԹՅՈՒՆ. Եթե մի բան հարցնեմ՝ ճիշտը կասե՞ս:
ՎԵՐՄԻՇԵՎ. Հարցրու:
ՄԱՆԿՈՒԹՅՈՒՆ. Իսկ կա՞ մի այնպիսի իրականություն, որի հետ մարդ չի հաշտվում:
ՎԵՐՄԻՇԵՎ. Իհարկե, կա...Երբ փորձում են ընկճել ոգիդ, կաշկանդել փոքրիկ, թեկուզ պատրանքային ազատությունդ կամ ստիպում են ուրանալ քո անցյալն ու ժողովրդին, ուրանալ ինքդ քեզ...
ՄԱՆԿՈՒԹՅՈՒՆ. Այդ ժամանակ մարդ դառնում է...
ՎԵՄԻՇԵՎ. Հեղափոխական... Դառնում է հեղափոխական և սկսում է մաշել բանտերի, մենախցերի ու զնդանների քարե պաղ հատակները:
ՄԱՆԿՈՒԹՅՈՒՆ. Ինչպես հիմա դո՞ւ ես մաշում:
ՎԵՐՄԻՇԵՎ. Ինչպես հիմա ես եմ մաշում: Եվ ականջիդ օղ արա: Չկա փըրկության որևէ ուրիշ ելք, ուրիշ միջոց: Պետք է ազատագրվել:
ՄԱՆԿՈՒԹՅՈՒՆ. Հիշո՞ւմ ես՝ ոնց էինք երգում... Քաջ Վարդանը հեծավ յուր ձին... Քաջ Վարդանը... Հետո ո՞նց էր: Մոռացե՞լ ես... (Նանգնում է թախտին ու փորձում է նստել Վերմիշևի ուսերին): Արի ձի-ձի խաղանք, հա՞...Ձի-ձի խաղանք...
ՎԵՐՄԻՇԵՎ. Ցած իջիր: Սիրտ չունեմ:
ՄԱՆԿՈՒԹՅՈՒՆ. (Նեղացած, դարձյալ նստում է թախտին): Քեզ տեղն է, որ սիրտ չունես: Գիտե՞ս ինչից է: Որովհետև հազվադեպ ես հիշում ինձ: Որովհետև ինձնից ոչինչ չես տարել քեզ հետ: Ամեն ինչ թողել ու վեր ես կացել դարձել մեծ...
ՎԵՐՄԻՇԵՎ. Չէ, ամեն ինչ չեմ թողել: Երկու բան հաստատ վերցրել եմ: Ու պահում եմ հոգուս խորքում:
ՄԱՆԿՈՒԹՅՈՒՆ. Իսկ ի՞նչ ես վերցրել: Գաղտնի՞ք է:
ՎԵՐՄԻՇԵՎ. Մի՞թե կարող եմ քեզնից գաղտնիք ունենալ: Ինքդ էիր ասում, որ միշտ միասին ենք, անբաժան... Հավատն եմ քեզնից տարել: Ու մեկ էլ ցավ զգալու կարողությունը:
ՄԱՆԿՈՒԹՅՈՒՆ. Մորեղբայր Արշակն ասում էր, որ հավատը երբեք միայնակ չի լինում: Միշտ Հույսի հետ է: Իսկ դա արդեն ոչ թե երկու, այլ երեք բան է:
ՎԵՐՄԻՇԵՎ. Թող լինի երեք:
ՄԱՆԿՈՒԹՅՈՒՆ. Հույսն ու Հավատն էլ հենց այնպես չեն լինում: Ամեն մարդ իր Հույսն է ունենում և իր Հավատը: Քոնը գիտե՞ս որն է:
ՎԵՐՄԻՇԵՎ. Իմն այն է, որ երբևէ ես էլ ազատ հայրենիք կունենամ: Իմ հոգում շարունակ մխում է Ցավը... Նորից կոտորածներ են սկսվել: Մորթում են: Ոնց են մորթում հայերին... Ուզում են ջնջել, վերացնել աշխարհից: Սոսկալի է... Դու նստած ես բանտում, իսկ դըրսում մորթում են, մորթում են, մորթում են քո ժողովրդին: Սեփական հողի վըրա...
ՄԱՆԿՈՒԹՅՈՒՆ. Իսկ դու ի՞նչ կարող ես անել: Գուցե դա էլ մի այնպիսի իրականություն է, որի հետ պետք է հաշտվել:
ՎԵՐՄԻՇԵՎ. Ոչ թե հաշտվել, այլ պետք է ազատագրվել... Առանց հապաղելու: Քանի դեռ երիտասարդ ենք: Քանի դեռ ուժ ունենք ու ավյուն... Քանի դեռ չենք վերջացել, չենք անհետացել՝ ամայության մեջ թողնելով մեր պապերի երկիրը:
ՄԱՆԿՈՒԹՅՈՒՆ. Մի հարց էլ տամ... Բայց կարո՞ղ ես ճիշտ պատասխանել:
ՎԵՐՄԻՇԵՎ. Ընդհանրապես չեմ պատասխանի:
ՄԱՆԿՈՒԹՅՈՒՆ. Ինչո՞ւ զայրացար:
ՎԵՐՄԻՇԵՎ. Ուզում ես պատրաստի ու

ճիշտ պատասխաններ ստանալ: Բոլորն էլ ուզում են պատրաստի ու ճիշտ պատասխաններ ստանալ: Բայց ո՞վ պետք է որոնի ու գտնի այդ պատասխանները:

ՄԱՆԿՈՒԹՅՈՒՆ. Ես հարցասեր տղա եմ:

ՎԵՐՄԻՇԵՎ. Իզուր ես պարծենում: Դա քեզ պատիվ չի բերում: Էլ չեմ ասում, որ ինձ՝ առավել ևս: Որքան հիշում եմ, միշտ էլ փորձել եմ ինքս գտնել հարցերի պատասխանները: Իմ կարողությամբ: Իմ սեփական ուժերով:

ՄԱՆԿՈՒԹՅՈՒՆ. Եվ երբեք չե՞ս սխալվել:

ՎԵՐՄԻՇԵՎ. Այն էլ ինչքան... Շատ: Բայց այդ սխալները իմն են եղել: Իմը: ոչ թե ուրիշինը: Ուրիշ կերպ անհնար է կովել, պնդանալ... Մենք երազներ ունենք, որ բերել ենք դարերի մշուշոտ հեռուներից: Մի օր, վերջապես, դրանք պետք է, չէ՞, իրականություն դառնան: Ուստի այժմվանից պետք է ինքդ քեզ նախապատրաստես դառնալու ապագա Հայաստանի իսկական գործիչ: Պետք է ինքդ քեզ դաստիարակես՝ որպես տեր և որպես ծառա: Տեր՝ քո երկրին, քո լեզվին, քո հող ու ջրին: Եվ ծառա՝ քո ժողովրդին...

... Հետո՞:

Անհավասիկ, Ալեքսանդր Վերմիշևի լուսանկարը իր իսկ կատարած մակագրությամբ:

Բանն այն է, որ կուսակցության Կենտկոմին հղած նամակով նա խնդրում էր իրեն ուղարկել ռազմաճակատ, քաղաքացիական կռիվների բնագիծ: Այնտեղ, ուր վճռվում էր խորհուրդների երկրի լինելու կամ չլինելու հարցը:

Ո՞վ գիտե, գուցե մի պահ եղավ, երբ նա զգաց, որ գնում է իր ճակատագրին ընդառաջ...

Այդ պահը, ամենայն հավանականությամբ, 1919 թվականի մայիսի 4-ին էր, երբ հանկարծ աչքովն ընկավ իր լուսանկարը:

Վերցրեց... Նայեց... Երկար նայեց... Ի՞նչ մտքեր ծնվեցին, ի՞նչ հուշեր արթնացան, ի՞նչ թրթիռներ զգաց նա...

Ո՞վ իմանա:

Նա վերցրեց գրիչը և կնոջը՝ Վալենտինային, թողեց ընդամենը չորս տողանոց իր կտակը.

«Ամենն առավոտ ու երեկո զավակիս ցույց տուր իր հայրիկին և մի մոռացիր ինձ:
Ալեքսանդր»

... Արդեն ժամեր տևող հարցաքննության ընթացքում ուրիշ էլ, ինչեր հիշեց նա: Կյանքը, կնոջը, նորածին որդուն... Իր երազները, կարոտները, իղձերը... Եվ տառապեց, չարչարվեց, դարձավ իսկական նահատակ...

Նրա վերջին ժամերի մասին թերթերը տպագրեցին ականատեսի պատմածը. «Մամոնտովի զբաղեցրած տան բակում կազակները ընկեր Վերմիշևին դաժան մահապատժի ենթարկեցին: Նախ անդամահատեցին մատները, քիթը, ականջները, ձեռքերը, այնուհետև գլխիվայր կախեցին ցանկապատից և երեք ժամ տևող տանջանքներից հետո սրերով կըտոր-կտոր արեցին կոմիսարին...»

Գուցե այդ անողորմ ու սահմռկեցուցիչ պահերին նույնպես, պատուհանից դուրս նայելով, գեներալ Մամոնտովը քթի տակ մռլտում էր «Սև աչեր» երգի մեղեդին...

Իսկ իմ ականջի տակ ես լսում եմ մի ուրիշ երգ, որը նույնպես հորինել է Ալեքսանդր Վերմիշևը.

Երբ նրան տանում էին մահապատժի,
օրն արդեն սուզվում էր աղջամուղջի
մեջ,
Թմբուկներ էին թնդում այդ պահին,
ամեն կերպ ջանալով խեղդել
ճշմարտության ձայնը:
Անարգ դահիճները ճերմակ սավանով
կամենում էին քողարկել իրենց
ճակատի սև բիծը:
Մահապարտի ծանրության տակ
ձգված լարը մի վերջին անգամ
մեղմորեն դողաց.
Տափաստանից ներխուժած քամին էր
այդ, որ ուզում էր անպայման
ավարտել իր կիսատ թողած երգը:
Աշխարհը լողում էր թանձր գիշերվա
մեջ, և հեռուներում հեծկլտում էր մի
կին:
Շեներն էին՝ ոռնում աղեկտուր,
Իսկ գերանից կախված զոհը
շարունակ ճոճվում էր քամու հորձանքի
տակ,
Աղերսելով անողորմ վրեժ...

Լսում եմ ու մտածում. մի՞թե իր սեփական մահերգն էր գրել նա դեռևս այն հեռավոր օրերին, երբ Պետերբուրգի ռեստորաններում արդեն երգում էին աշխարհում ամենաերկարակյաց ու ամենաքնարական, ամենակրքոտ ու ամենաքնքուշ երգերից մեկը՝ «Սև աչերը»...



ԱՐԿԱԴԻ ԳԱՅԴԱՐ

# Տաք քարը

Թարգմանեց ՕԼԳԱ ՍԱՆԱՀՅԱՆԸ

Մի ծերուկ էր ապրում գյուղում միայնակ, նա արդեն թույլ էր ու տկար, կողովներ էր հյուսում, թաղիքե ոտնամաններին ներբաններ էր կարում, հսկում էր կոլտնտեսության այգին չար տղաներից, այդպես ապրում էր ու վաստակում օրվա հացը:

Ծերուկը գյուղ էր եկել վաղուց, հեռու տեղից, բայց մարդիկ իսկույն գլխի էին ընկել, որ նա կյանքում քիչ չէր տեսել վիշտ ու տառապանք: Կաղ էր: Այտի վը-

Նկարը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

բայով ու շրթունքի մի թեք սպի էր իջնում ցած: Եվ եթե նույնիսկ ժպտում էր, թվում էր տխուր ու խստադեմ:

Մի անգամ մի տղա, Իվաշկա Կուդրյաշկինը թաքուն մտավ կոլտնտեսության այգին, որ խնձոր քաղի ու մի կուշտ ուտի: Բայց շալվարն ընկավ ցանկապատի մեխին, և նա գլորվեց հաղարջի փըշոտ թփերի մեջ, ձեռ ու ոտը մի լավ քերծեց: Իվաշկան գոռաց՝ ձայնը գլուխը գցած, և տեղնուտեղը պահակը նրան բռնեց:

Դե, իհարկե, ծերուկը կարող էր եղինջի թփերով Իվաշկային մի լավ դաղել, բայց դրանից էլ ավելի մեծ պատիժ կլիներ, եթե նրան տաներ դպրոց ու այնտեղ պատմեր նրա արարքի մասին:

Բայց ծերուկը խղճաց Իվաշկային, նըրա ձեռքերը այնպես էին ուռել, կապտել, ետևից էլ ոչխարի պոչուկի նման կախ էր ընկել ճղված շալվարի պատառը, իսկ դեմքի վրայով վազում էին արցունքի կաթիլները:

Ծերուկը վախեցած Իվաշկային դուրս բերեց այգու դռնակից և բաց թողեց, նույնիսկ մի ապտակ էլ չտվեց, ետևից մի խոսք անգամ չասաց:

Ցավից ու ամոթից Իվաշկան քայլեց դեպի անտառ, բայց ճանապարհը շփոթեց և հասավ ճահճուտին: Նա հոգնել էր, նստեց մամուռի միջից դուրս ցցված մի կապույտ քարի, բայց իսկույն ճչաց ու վեր թռավ, կարծեց, թե նստել է անտառային մեղվի վրա և նա ուժեղ խայթել է իրեն:

Բայց քարի վրա ոչ մի մեղու չկար: Այդ քարը շիկացած ածուխի նման տաք էր, և նրա հարթ մակերեսի վրա տառեր էին երևում, որոնք լցված էին կավով:

Պարզ էր, որ դա կախարդական քար էր, Իվաշկան իսկույն հասկացավ, հանեց կոշիկը և կրունկով սկսեց քանդել տառերի մեջ լցված կավը:

Եվ ահա թե նա ինչ կարդաց.

«Նա՛, ով այս քարը հասցնի լեռան գագաթը և այնտեղ կոտրի, նորից կջահելանա և կյանքը կսկսի նորից»:

Տողերից ցած երևաց կնիք, բայց ոչ կլոր, սովորական, ինչպես գյուղսովետի կնիքն էր, և ոչ էլ եռանկյունի, ինչպես կոոպերատիվի տալոնների վրայինը, այլ մի ուրիշ տեսակ, շատ զարմանալի. երկու խաչ, երեք պոչ, մի փոքրիկ անցք, կողքին՝ գիծ և չորս ստորակետ:

Իվաշկա Կուդրյաշկինը տխրեց, նա ընդամենը ութ տարեկան էր, նոր-նոր մտել էր իննի մեջ: Եվ կյանքը սկսել նորից, սկզբից, այսինքն՝ երկու տարի նըստել առաջին դասարանում, նա ոչ մի կերպ չէր ցանկանում:

Ա՛յ, եթե այդ քարի շնորհիվ դպրոցի դասերն առանց սովորելու թռչեր երրորդ դասարան, ա՛յ, ի՞նչ եմ ասել, դա հրաշալի կլիներ:

Բայց ամենքին հայտնի է, և վաղուց է հայտնի, որ այդպիսի հրաշք զորություն նույնիսկ ամենակախարդական քարերն էլ երբեք չեն ունեցել:

Քայլելով այգու մոտով տխուր ու մըտածկոտ, Իվաշկան նորից հանդիպեց ծերուկին, նա հազում էր ու մերթ ընդ մերթ կանգ առնում, որ շունչ քաշի, նա տանում էր կրով լի մի դույլ, իսկ ուսին դրել էր երկար ձողը, որի ծայրին ճիլոպ էր կապած:

Այդ ժամանակ Իվաշկան, որ բարի սիրտ ուներ, մտածեց. «Ահա՛ գալիս է մի մարդ, որը կարող էր այսօր եղինջով ինձ մի լավ դաղել: Բայց խղճաց: Արի հիմա էլ ես խղճամ նրան և վերադարձնեմ նրա ջահելությունը, թող նա այլևս չհազա, կաղալով չքայլի, այդպես ծանր չշնչի»:

Ահա՛ թե ինչպիսի բարի մտքեր էին պտտվում երախտագետ Իվաշկայի գըլխում, երբ նա մոտեցավ ծերուկին ու սկսեց պատմել տաք քարի մասին: Ծերուկը զուսպ ու խստադեմ շնորհակալություն հայտնեց Իվաշկային, բայց չհամաձայնեց իր գործը թողնել և գնալ ճահճուտ, քանի որ աշխարհում դեռ կային այնպիսի մարդիկ, որոնք իր բացակայությունից օգտվելով, կարող էին մտնել այգին ու ծառերը մերկացնել:

Եվ ծերուկը պատվիրեց Իվաշկային քարը ճահճուտից տանել, հասցնել լեռան գագաթը: Իսկ ինքը հետո կգա այնտեղ, մի կարճ ժամանակով, և մի ինչ-որ բանով քարը կկոտրի:

Ցեխ ու կավով ոտն ու ձեռը կեղտոտ՝ Իվաշկան մի կերպ դուրս քաշեց քարը ճահճի միջից և լեզուն հանած պառկեց լեռան ստորոտում՝ հանգստանալու:

«Ահա՛, քարը հիմա կհասցնեմ լեռան գագաթը, կաղ ծերուկը կգա, քարը կըկոտրի, կջահելանա և նորից կսկսի իր կյանքը: Բոլորն էլ ասում են, չէ՞, որ նա

շատ փիշտ ու ցավ է տեսել իր կյանքում: Նա ծեր է, միայնակ, ուժասպառ ու տըրկար: Երջանիկ օր երբեք չի տեսել: Իսկ ուրիշ մարդիկ, իհարկե, տեսել են: Եվ ինքը Իվաշկան էլ է տեսել այդպիսի երջանիկ օրեր: Մի անգամ, երբ դասից ուշանում էր և մի անծանոթ վարորդ փայլուն, պսպղուն մարդատար մեքենայով իրեն հասցրեց դպրոց: Հետո, երբ գարնանը հենց ձեռքով խանդակի մեջ բռնեց մի մեծ գայլաձուկ: Եվ հետո, երբ քեռի Միտրոֆանը նրան իր հետ տարավ քաղաք՝ մայիսմեկյան տոնահանդեսին:

«Ուրեմն թող դժբախտ ծերուկն էլ տեսնի երջանիկ օրեր»,—մտածեց Իվաշկան:

Նա տեղից ելավ և համբերությամբ քարը քաշեց, տարավ, տարավ դեպի վեր, դեպի լեռան գագաթը:

Եվ ահա մայրամուտից առաջ, երբ հոգնած Իվաշկան ցրտից դողալով թաց ու ցեխոտ հագուստն էր չորացնում տաք քարի մոտ, ծերուկը եկավ լեռը:

— Պապի՛կ, ինչո՞ւ հետդ չես բերել ոչ մուրճ, ոչ կացին, ոչ էլ բրիչ,— զարմացավ Իվաշկան,— չլինի՞ հույս ունես, թե քարը ձեռքով կկոտրես:

—Ո՛չ, Իվաշկա,— ասաց ծերուկը,— ես չեմ կարծում, թե քարը ձեռքով կըկոտրեմ: Եվ միտք էլ չունեմ կոտրելու, որովհետև չեմ ցանկանում կյանքս նորից սկսել:

Ծերուկը մոտեցավ Իվաշկային, որ ապշած նրան էր նայում, և գլուխը շոյեց: Իվաշկան զգաց, որ ծերուկի ծանր ձեռքը դողում է:

— Դու, անշուշտ, կարծում ես, որ ես ծեր եմ, ոտքս կաղ է, դեմքս այլանդակ և կյանքս դժբախտ,— ասաց ծերուկը:— Բայց քեզ կասեմ, որ ես աշխարհում ամենաերջանիկ մարդն եմ: Գերանը ընկել, ոտքս կոտրել է, բայց դա եղել է այն ժամանակ, երբ մենք անփորձ էինք՝ ցանկապատերը տապալելու և դրանցով բարիկադներ կանգնեցնելու համար, այո՛, դա այն ժամանակ էր, երբ ապստամբություն էինք պատրաստվում ցարի դեմ, որին դու տեսել ես միայն նկարում: Սրի հարվածը մարտի մեջ ճեղքել է դեմքս, բայց դա այն ժամանակ էր, երբ ժողովըրդական առաջին գնդերը արդեն խըփում ու ջախջախում էին թշնամու բանակը:

Յուրտ բարաքում՝ հարդի վրա պառկած էի տիֆով հիվանդ, այս ու այն կողմ էի նետվում զառանցանքի մեջ: Որպես մահվան չարագույժ բոթ՝ գլխիս վերևում խոսքեր էի լսում, թե մեր երկիրը թշնամու օղակի մեջ է և մենք պարտվում ենք:

Բայց աչքս բացելով արեգակի առաջին շողերի հետ, ուշքի եկա և իմացա, որ թշնամին կրկին ջախջախված է և մենք նորից հարձակվում ենք:

Մենք պառկած տեղից միմյանց էինք մեկնում մեր նիհար, ոսկրացած ձեռքերը և երկչոտ երազում. եթե ոչ մենք, ապա գոնե մեզնից հետո եկողները կտեսնեն մեր երկիրը ազատ ու հզոր, ինչպես հիմա է: Եվ մի՞թե դա երջանկություն չէ, ա՛յ դու անխելք Իվաշկա: Եվ ինչիս է պետք մի ուրիշ կյանք, մի ուրիշ ջահելություն, երբ իմ կյանքը եղել է, այո՛, դժվարին, բայց ազնիվ ու գիտակցված:

Ծերուկը լռեց, հանեց ծխամորճը և սկսեց ծխել:

— Այո՛, պապիկ,— կամաց խոսեց Իվաշկան:— Եվ եթե այդպես է, ապա ինչու տանջվեցի և քարը հասցրի լեռան գագաթը, երբ կարող էր ընկած մնալ ճահճուտում, ինչպես որ մնացել էր այսքան ժամանակ:

— Թո՛ղ մնա լեռան վրա, թո՛ղ բոլորը տեսնեն,— ասաց ծերուկը,— և դու էլ, Իվաշկա, տե՛ս, թե ինչ է լինելու հետո:

Այդ օրից անցել են շատ տարիներ, բայց այն քարը ինչպես որ ընկած է լեռան վրա, այդպես էլ մնում է, ոչ ոք չի կոտրել:

Ծատերն են գալիս տեսնելու: Մոտենում են, նայում՝ մտքի մեջ ընկած օրորում գլուխները, ետ դառնում, գնում իրենց գործին:

Ես էլ եմ եղել մի անգամ այդ լեռան վրա: Հոգիս ինչ-որ անհանգիստ էր, տըրամադրությունս՝ վատ: «Իսկ ի՞նչ կլինի,— մտածեցի ես,— խփեմ, քարը կոտրեմ և կյանքս սկսեմ նորից»:

Բայց կանգնեցի այդպես, կանգնեցի և լավ էր, որ շուտ խելքի եկա:

«Է՛,— մտածեցի ես,— ի՞նչ կասեն հարևաններս, երբ ինձ տեսնեն ջահելացած. կասեն՝ հրե՜ն, գալիս է մեր հիմար ու անխելք ջահելը: Երևում է՝ չի կարողացել իր կյանքն ապրել ինչպես պետքն է, չի հասկացել իր երջանկությունը և հիմա ուզում է նույնը սկսել նորից»:

Ես մի ծխախոտ փաթաթեցի: Կպցրի և ետ դարձա եկածս ճանապարհով:

1941 թ.



# Շուշանիկ Կուրղինյան
1876-1927

## Մի հոգեհանգիստ

Ո՛չ խաչ, մահարձա՛ն… անշուք հողակույտ
Ամայի դաշտում լո՜ւռ առանձնացած
    Ընկած է անփույթ:
Անթիվ վերքերով վիրավոր կրծքում
Վեհ գաղափարի անհաղթ փոթորիկ
    Էլ չի աղմկում:
Հոգնած գլուխը մայր հողի կրծքին՝
Ցավոտ աշխարհի լացը չի լսում—
    Քնա՜ծ է հոգին:
Աստղերը-կանթեղ, ցոլքով հրավառ
Շիրմին լույս տալիս. բույսը բուրմունքով—
    Խնկարկում բուրվառ:
Քամին թևերով գգվում է, դողում—
Ու մահասարսուռ ձայնով վշտացած
    Ողորմի՜ ասում:
Ո՛չ խաչ, մահարձա՛ն… կյանքի խաչը նա
Այնպե՜ս անվեհեր, ամենքի համար
    Տարավ Գողգոթա…

2 հոկտեմբերի, 1906 թ.

ԱՐՄԵՆ ԶՈՒՐԱԲՈՎ

# Տեղ տնային աշխատանքի համար

(հատված վեպից)

Քննիչը՝ երկար ու համբերատար, գերմաներենով հարցեր էր տալիս, որոնց Կամոն չէր պատասխանում։ «Ինչո՞ւ եմ լռում»,— մտածում էր նա։ Հարկավոր էր խոսել, խոսելն ավելի հեշտ է, քան լռելը։ Իսկ ես պետք է ինքըս ինձ գոնե փոքրիկ զվարճություններ պատճառեմ, եթե ոչ՝ կմեռնեմ ձանձրույթից։ Քննիչը նորից հարցրեց, թե նա ինչ ազգության է պատկանում, Կամոն լուրջ ու հանգամանորեն պատասխանեց։

— Ծագումով հայ եմ, բայց միաժամանակ ռուս եմ, գերմանացի, անգլիացի, նեգր, ֆրանսիացի, լեհ, բուլղարացի, իմ մեջ պարոն քննիչ, աշխարհի բոլոր ազգությունները կան։

Քննիչը լսում էր առանց ընդհատելու։ Հետո մի փոքր լռեց ու ասաց, որ նա իզուր է խելագար ձևանում։ Մոաբիտում են գտնվում Գերմանիայի լավագույն բըժըշկական փորձագետները։ Եվ նորից Կամոյի ծիծաղը եկավ. բանտարկության օրից ի վեր նա առաջին անգամ ասաց այն, ինչ մտածում էր, և նրան գժի տեղ դրեցին։ Հետո, երբ քննիչը գնաց, նա հիշեց նրա խոսքերը և զարմացավ, թե ինչպես է, որ այդ միտքը չէր ծագել իր գլխում։ Լավագույնն միջոցն է, մտածեց նա, իսկ հետո կարելի է փախչել գժանոցից։ Բայց ես երբեք գժերի չեմ տեսել։ Առանց հետաձգելու, նույն գիշերն իսկ, նա նորից սկսեց ճաղերը պոկելու փորձ անել, խփում էր պատերին, պատառոտում շորերը, հարձակվում պահապան զինվորի վրա։ Նրա թևերը ոլորեցին, մերկացրեցին և գցեցին նկուղը։ Նըկուղը պատած էր սառույցով։ Ինը օր շարունակ նա մերկ ցատկոտում էր սառցե հատակին։

Տասներորդ օրը բանտախուց մտավ բժիշկը։ Նա արդեն մի քանի անգամ եկել էր Կամոյի մոտ և ամեն անգամ քաղաքավարի ներկայացել կոտրված ռուսերենով.

— Դոկտոր Հոֆման։ Մտահոգություն ունեմ ձեր առողջության համար։

Լուռ նստեց հատակին ամրացված աթոռակին և նայեց նրա աչքերին։ Կամոն կապկպված ձեռքերով կանգնել էր անկյունում և նույնպես, առանց հայացքը կտրելու, նայում էր բժշկին։ Բժշկի աչքերն ասում էին՝ նայիր իմ ճերմակած մազերին և իզուր ժամանակ մի վատնիր, գուցե դու ժամանա՞կ ես ուզում շահել։ Բայց դա քեզ ի՞նչ կտա։ Մոաբիտից անհնար է փախչել, իսկ հիվանդանոց ես քեզ չեմ տեղափոխի, ինչքան էլ տխուր աչքերով նայես ինձ։ Ես իմ պարտքը կատարում եմ ազնվորեն...

Դու ազնվորեն ես կատարում քո պարտքը, հերր դոկտոր, և դու խելացի աչքեր ունես, բայց ես ուրիշ ելք չունեմ, նույնիսկ իմ գոտին են վերցրել, որ չկարողանամ կախվել։ Մի շաբաթից դատն է։ Դու ճիշտ ես՝ ես լրիվ առողջ եմ։ Իմ առողջությունը ինձ չի պատկանում, ահա թե ինչու կյանքումս երբեք չեմ խմել և չեմ ծխել, իսկ արդեն հինգ տարի է, Բաթումի բանտից սկսած, ինչ ամեն առավոտ մարմնամարզությամբ եմ զբաղվում։ Հիմա չեմ զբաղվում, հիմա ես խելագար եմ։ Եվ դուք բոլորդ, անձամբ դուք և մյուսները, և՛ քննիչը, և՛ դատավորը, բոլորդ, որ խելացի եք, ազնիվ, խղճմտորեն ձեր պարտքն եք կատարում, ազնվաբար էլ կընդունեք, որ ես խելագարվել եմ, և ինձ կտեղափոխեք հիվանդանոց, ու հիվանդանոցից ես կըփախչեմ։ Ներիր, դու այդ դեպքում կըկորցնես քո տեղը, բայց ես ուրիշ ելք չունեմ...

Չորրորդ օրը զոնդ բերեցին։ Նա գիտեր, որ հացադուլ անողներին կերակրում են զոնդով։ Շատ հասարակ բան է, մտածում էր նա, հիմա ատամներդ բռնությամբ կբացեն և խողովակը կմտցնեն կոկորդդ։ Եթե ես գիտակցաբար եմ սոված մնում, ապա պետք է դիմադրեմ, կարելի է կծոտել կաշեփողը, ոտքով խփել վերակացուներին։ Այդ դեպքում, իհարկե, կկապոտեն քեզ։ Իսկ եթե անգիտակցաբա՞ր ես սոված մնացել, իսկ եթե խելագա՞ր ես... Վերակացու-



Նկարը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

ներից մեկը ետևից անսպասելիորեն բռնեց նրա ձեռքերը, մյուսը բռնի ուժով վեր տարավ նրա ծնոտը, զոնդը մոտեցրեց բերանին, սպիտակ, քրտնած դեմքը համարյա կպավ նրան... Վախենում է, հասցրեց մտածել Կամոն և բարձրը ու սարսափած ձայնով գոռաց.

— Խմում եմ, խմում եմ, խմում եմ... Պետք չէ...

Նրան բաց թողեցին, տվեցին ճաշամանը, ու նա, հալածվածի հայացքով չորս կողմը նայելով, սկսեց ուտել ու առանց հնտռնացիայի, շուտասելունկի պես բութ կրկնել.

— Ուր է իմ շեֆ խոհարարը... Ինչ եք արել նրան... Իմ շեֆ խոհարարը լավ կերակրում էր ինձ... Ինչո՞ւ եք նրան սպանել...

Երբ Հոֆմանը եկավ, Կամոն սկսեց քայլել խցիկով մեկ և գոռալ.

— Պատի՛ժ: Պատի՛ժ:

Նա կիպ մոտեցավ Հոֆմանին, մոտիկից տեսավ նրա անվրդով, կապույտ աչքերը և հասկացավ, որ այ հենց հիմա,

հենց այս ակնթարթին Հոֆմանը համատաց իրեն: Չի կարելի կորցնել այս պահը, մտածեց նա, և դեռ չհասցրած մի բան որոշել, զգալով միայն տարօրինակ մի ինքնավստահություն ու ներքին ազատություն, սկսեց իրար ետևից շարել միտքը եկած պատահական բառերը:

— Հերր դոկտոր, ասեք Վորոնցով-Դաշկովին, որ ինձ հանգիստ թողնի… Ես կուտեմ այն ամենը, ինչ նա ուղարկում է ինձ… Միայն թե ինձ հանգիստ թողնի…

Նրան ոչ մի տեղ չտարան, դատեցին մոաբիտյան բանտի մեծ դահլիճում: Երկար ու բարձր մի սեղան կար, որի վրա դրված էին նրա ճամպրուկից հանած հրապարակներն ու պայթուցիչները, որոնք նա անմիջապես ճանաչեց: Սեղանի ետևում ցցված էին դատարկ բազկաթոռների երկար մեջքերը: Հետո այդ բազկաթոռներին նստեցին սև թիկնոց հագած մարդիկ, իսկ դահլիճում աղոտ երևացին կարծես միմյանց ձուլված սպիտակ դեմքեր:

Ի՞նչ հարցեր կլինեն: Անուն, ազգանուն, որտեղացի է, ազգություն… Էլի՞ ազգություն: Հոֆմանի կողքին փորձագետներ են նստած: Նստել են ճիշտ իր դիմաց, որ լավ հետևեն: Դատավորը հարցեր կտա, իսկ նրանք ուշադիր կնայեն իրեն: Ի՞նչ են տեսնում հիմա: Մորուքավոր նիհար մի մարդ ձեռքերով հենվել է արգելափակոցին, գլուխը դրել ձեռքերի վրա և կարծես ննջում է: Պարզ է, որ քնած չէ: Իսկ ինչո՞ւ է այդպես նստել: Գլո՞ւխն է ցավում, չի՞ հասկանում, թե ինչ է կատարվում, որտեղ է գտնվում: Թե՞ ուզում է խաբել: Լավ միտք է. նրանց աչքերով նայել իրեն: Շատ լավ միտք է:

Նա բարձրացրեց գլուխը, նայեց դատավորին, սիրալիր գլխով արեց: Թարգմանչուհին ժպտալով հարցերը կրկնեց ռուսերեն: Կամոն արգելափակոցի վրայով թեքվեց նրա կողմը և համարյա շշուկով միայն նրան ասաց, որ չգիտի իր անունը, չգիտի, թե ովքեր են իր ծնողները, գիտի միայն մի բան, որ ինքը Ռուսաստանից է, ապրել է Թիֆլիսում և քսանվեց տարեկան է կամ գուցեև քսանսունվեց…

Այդ ակնթարթային ինքնավստահությունի՞ց էր, թե՞ այն բանից, որ հանկարծ կարիք զգաց խախտելու սահուն և հանգիստ ռիթմը, որը փորձագետներին թույլ էր տալիս հետևել իրեն, թե՞ անկնկալ ծնված գաղափարի անզուսպ գայթակղությունից, նա վեր թռավ տեղից և, տեններեն խառնելով հայերենն ու վրացերենը, սկսեց հայհոյել իր մատնչին: Թարգմանչուհին ուշադիր ականջ էր դրել, ճգնելով հասկանալ: Անսպասելիորեն Կամոն տնքաց, գլուխը առավ ափերի մեջ ու ընկավ աթոռին:

Փորձագետների աչքերում խղճահարություն երևաց, մտածեց նա, հիմա նրանք հավատացին ինձ: Պետք է նրանց աչքերով նայել և արտահայտել այն, ինչ իմ տեսքը հուշում և թելադրում է նրանց: Սա էլ լավ միտք է. այսպես ասած արձագանքել ինքս ինձ: Եթե դա համընկնի նրանց զգացածին, ուրեմն՝ ինձ կհավատան:

Դատավորը նորից սկսեց հարցեր տալ: Կամոն գերմաներեն հասկանում էր, և մինչ թարգմանչուհին ռուսերեն կկրկներ հարցը, կարող էր նախօրոք մտածել պատասխանը: Դատավորը հարցրեց, թե նա ինչ կուսակցության է պատկանում: Հարցը տվեց գործնական տոնով, ինչպես առողջ մարդու:

Կամոն, անսպասելիորեն, չարությամբ ասաց.

— Չգիտեմ… Թող սատանան իմանա: Ես չգիտեմ…

Դատավորը հարցրեց. տարբերություն կա՞ արդյոք գերմանական և ռուսական սոցիալ-դեմոկրատների միջև: Նա հասկացավ գերմաներենը և, չսպասելով թարգմանությանը, դարձավ Հոֆմանին և բարձր ճչաց.

— Էլ չեմ կարող խոսել… Հանգիստ թողեք ինձ… Հերր դոկտոր, ասեք ինձ հանգիստ թողնեն…

Դատավորը դիմեց դատախազին: Դատախազը պատասխանեց մի բառով, և Կամոն հասկացավ, թե այդ բառն ինչ է նշանակում: Դատախազն ասաց. համաձայն եմ…

Դատարանը որոշեց անորոշ ժամկետով հետաձգել դատը և բժշկական փորձաքննության ենթարկել մեղադրյալի հոգեվիճակը:

Հունիսի չորսին հայտնեցին, որ նրան տեղափոխում են Հերցբերգի հոգեբուժական հիվանդանոցը: Դուրս գալով բանտախցից, նա հայելի խնդրեց: Տեսավ նիհար մի դեմք. պյտերի տեղ՝ սև խոռոչներ, սև մորուքով, փոս ընկած աչքերով և ծռված տանջահար բերանով: Թքեց հայելու վրա և շուռ եկավ…

ԳՐԻԳՈՐ ՋԱՆԻԿՅԱՆ

# Հավատարմություն

Յուրաքանչյուր երկիր, որ պետականություն ունի, ունի նաև հիմն: Երկրի հիմնը կատարում են փողային նվագախմբերը: Երևանի քաղաքային պիոներների պալատի փողային նվագախումբը Հայաստանի պետական հիմնը կատարում է իր ստեղծման օրից ի վեր:

## ՍԿԻԶԲԸ, ՈՐԻ ՄԱՍԻՆ ՉՀԱՍՑՐԵՑ ՊԱՏՄԵԼ ՆԻԿՈՂԱՅ ԹԵՅՄՈՒՐԱԶՅԱՆԸ

Մենք իրար չենք հանդիպել: Նրան, գրելու նպատակով, ըստ երևույթին, ոչ մի գրող, լրագրող չի հանդիպել, որովհետև Նիկոլայ Թեյմուրազյանը համեստ, քաշվող բնավորություն է ունեցել: Երևի այդպիսին են լինում վաստակած մարդիկ: Նա ավարտել էր Թիֆլիսի կայսերական երաժշտական ուսումնարանը, գրել քայլերգեր, երգաշարեր, նվագախումբ ստեղծել Իգդիրում, Ծուշիում, Երևանում ու Լենինականում, հիմնել հանրային գրադարանի ձայնանիշային գրականության բաժինը, կազմել Կոմիտասի, Կարա-Մուրզայի, Եկմալյանի մատենագրությունը: Այնուամենայնիվ, եթե մենք հրաշքով հանդիպեինք, նա ըստ երևույթին պիտի ասեր.

«Հայաստանում խորհրդային կարգեր նոր էին հաստատվել, հայությունն ամեն կողմից հայրենիք էր ձգտում. մանավանդ նրանք, ովքեր փրկվել էին թուրքական մոլեգին հալածանքներից: Ես էլ զավակներիս առա ու եկա, չնայած կասկածում էի. մոխիրների մեջ դեռ ծխացող երկրին պե՞տք է իմ մասնագիտությունը: Աշնանային մի երեկո այդ էի մտմտում, երբ դուռը բացվեց, ներս մտավ Ղազարոս Աղայանի որդին՝ Թիֆլիսի իմ լավ գործընկեր Մուշեղ Աղայանը, հետը՝ կարճ տաբատով մի վառվռուն երիտասարդ (հետո իմացա, որ Ստյոպա Մանուկյանն է՝ պատկոմական կազմակերպության ղեկավարը): Չգիտեմ, մինչև մեր տուն գալը ընկերս իմ մասին ինչ էր ասել, երիտասարդը արագ բուն խնդրին անցավ: Պարզվեց՝ պատկոմական կազմակերպությունը որոշել է փողային նվագախումբ ունենալ, ուզում են, որ ես նվագավարը լինեմ: Ի՞նչ ասեմ, խսկույն ոգևորվեցի: Ուրախացա նույնիսկ, որ իմ հայրենիքում ինձ համար գործ գտնվեց:

— Ուրեմն, մաեստրո ունեցանք,— խանդավառված՝ գանգուրները թափահարեց Ստյոպան,— մնում է գործիքները:

— Մի մտածեք,— հանգիստ ժպտացի ես,— գործիք էլ կունենանք, հենց վաղը:

Նրանք զարմացած նայեցին իրար և, կարծում եմ, չհավատացին: Դե՛ ո՞վ էր հիշում, որ Կոմիտասը դեռևս 1905 թվականին, Էջմիածնում, Գևորգյան ճեմարանի ուսանողների ուժերով ուզում էր փողային նվագախումբ ստեղծել: Նույնիսկ գնաց Մոսկվա, արտասահմանյան գործիքներ ձեռք բերեց: Բայց սկսվեցին կոտորածները... Մի խոսքով, հենց հաջորդ օրը ես ճեմարանում գտա փոշու մեջ կորած գործիքները, բերեցի Երևան: Շուտով ողջ քաղաքն իմացավ, որ փողային նվագախումբ է ստեղծվելու: Պատկոմական տան առաջ նվագել երազող երեխաների այնպիսի հերթեր էին գոյանում, որ դժվարանում էի անգամ ընտրություն կատարել: Մեր առաջին բացօթյա համերգը, իրոք, համաքաղաքային տոն, իրադարձություն դարձավ: Փոքրիկները ողջ Աստաֆյանով վազում էին մեր ետևից, մեծերը ծափահարում էին, թաշկինակներ թափահարում: Երևի ուրախանում էին, որ իրականացել է Կոմիտասի իղձը»:

## ԱՌԱՋԻՆ ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆԸ, ՈՐԻ ՄԱՆՐԱՄԱՍՆԵՐԸ ՀՈՒԶՄՈՒՆՔԻՑ ՉԿԱՐՈՂԱՑԱՎ ՊԱՏՄԵԼ ՄԵԼԱՆՅԱ ԹԵՅՄՈՒՐԱԶՅԱՆԸ

Դուք նրան նկատած կլինեք Լենինի պողոտայում, իր տան առջև, ուր սիրում






Անդրկովկասի պատվիրակությունը Պիոներական համամիութենական 1-ին հավաքի ժամանակ

Մելանյա Թեյմուրազյան. նվագախմբի առաջին աղջիկը

է զբոսնել լարված աշխատանքից հետո: Զգացե՞լ եք, ոչ մի երեխայի կողքից անտարբեր չի կարողանում անցնել, խանդաղատանքով ժպտում, զրուցում է հետները: Մելանյա Թեյմուրազյանը եղել է Հայաստանի առաջին պիոներներից մեկը և առաջին աղջիկը, որ ելույթ է ունեցել պիոներպալատի փողային նվագախմբում:

«Ես անմայր եմ մեծացել: Որպեսզի տանը մենակ չմնամ, հայրս՝ Նիկոլայ Թեյմուրազյանն ինձ հետը տանում էր փորձերի: Այդ ամառ էլ Ծաղկաձոր գնացինք, տղաները նվագելու էին ճամբարներում: Մի գիշեր ջահերով երթ էր, թե խարույկի հանդես՝ չեմ հիշում, ինձ վրանում մենակ թողեցին: Կարծեմ մի քիչ հիվանդ էի: Զանձրույթից ձեռքս առա ալտն ու սկսեցի ինձ համար նվագել: Մեկ էլ դուռը բացվեց, ներս մտավ հայրս: Թվաց, թե կբարկանա, որ առանց թույլտվության գործիք եմ ձեռքս առել, բայց նա ինձ նստեցրեց ծնկին, մեղմ ասաց.

— Ապա՛, նորից նվագիր:

Հայրս ուշադիր լսում էր: Մեկ էլ համբուրեց ինձ, ժպտաց.

— Կեցցե՛ս, վաղվանից դու նվագախմբի սան ես...

Ճիշտն ասած՝ չհավատացի: Փողային

նվագախմբում մենք աղջիկ չէինք տեսել, չէինք էլ պատկերացնում: Բայց, ինչպես ասել էր հայրս, առավոտյան կարճ անդրավարտիքով, պիոներական փողկապով ներկայացա փորձի: Ու հենց առաջին պարապմունքին զգացի, որ հայրիկը աշխատանքի ժամանակ շատ պահանջկոտ է և ուշադրություն է դարձնում ամեն մանրուքի՝ գործիքի մաքրությանը, վզկապի արդուկին, անգամ մազերի սանրվածքին: Եթե այդպես չվարվեր, նվագախումբն ըստ երևույթին նման հաջողություններ չէր ունենա՝ հանրապետական, անդրկովկասյան մրցույթներում առաջնություն չէր շահի, վերջապես նրա համբավը չէր գնա, հասնի Մոսկվա...

1929 թվականն, օգոստոսի վերջ, Մոսկվայի «Դինամո» մարզադաշտը լեփ-լեցուն է: Քար լռության մեջ հնչում է շքերթի հրամանատարի ձայնը.

— Ուշադրությո՜ւն, ուշադրությո՜ւն, պիոներների համամիութենական առաջին հավաքը հայտարարվում է բացված...

Ես, «Երևան» փողային նվագախմբի այժմյան գեղարվեստական ղեկավար, պրոֆեսոր Հայկազ Մեսիայանը, մեր երկու վաղամեռիկ ընկերները համաչափ քայլերով հասնում ենք մարզադաշտի կենտրոնն ու շեփորները շրթունքներիս մոտեցնելով՝ հնչեցնում հավաքի ազդականչերը: Հսկա մարզադաշտը ալեկոծվում է ծափողջույններից: Հանկարծ բոլորը սսկվում են, շարքերով շշուկ է սահում.

— Նայեցեք, շեփորահարներից մեկը աղջիկ է...

Այդ երեկո, մենք երկար նվագեցինք, (հավաքին մասնակցող միակ նվագախումբը մերն էր, շատ երեխաներ փողային գործիք էլ չէին տեսել): Ուշ գիշերին, հոգնած, երջանիկ հանրակացարան էինք վերադառնում, ինձ ընդառաջ նետվեցին մեզ հյուրընկալող պիոներները.

— Մելանյա, շնորհավորում ենք, քեզ երեխաների միջազգային առաջին կոնգրեսի պատգամավոր են ընտրել: Առավոտյան պետք է Կրեմլում լինես:

Հաջորդ օրը վաղ Կրեմլ ներկայացա և Գեորգիևյան դահլիճում լսեցի Նադեժդա Կոնստանտինովնային, Մարիա Իլյինիչնային, տեսա Գորկուն: Խոստովանում եմ, ինձ ամենից շատ զարմացրին նեգր երեխաները, որոնցից աչք չէի կարողանում կտրել: Սև մաշկ առաջին անգամ էի տեսնում: Հրաժեշտի ժամանակ մեզ շոկոլադի սալիկ բաժանեցին, և ես այնքան էի ուրախացել, որ ափսոսում էի ուտել, պահում էի ափիս մեջ: Այդպես էլ հալվեց, փչացավ:

Իսկ հավաքը շարունակվում էր: Մեզ անընդհատ ձայնագրում էին, կինոյի համար նկարահանումներ անում: Վերջում էլ ասացին, որ ելույթ ենք ունենալու եզրափակիչ համերգին, Մեծ թատրոնի բեմում:

Հայրիկը նույնիսկ չէր կարողանում հուզմունքը զսպել: Նորից ու նորից փորձել էր տալիս համարները, դողդողացող շուրթերով ասում.

— Դուք հասկանո՞ւմ եք, թե ինչ է նշանակում Մեծ թատրոն, գիտե՞ք, թե ովքեր են ելույթ ունեցել նրա բեմում:

Այդ անմոռանալի համերգին մենք կատարեցինք «Ալմաստ» օպերայի քայլերգը, և ողջ դահլիճը հոտնկայս ծափահարեց: Հետո հնչեցին հայկական «Պապուրին», ռուս կոմպոզիտորների մեղեդիներ...»:

Մելանյա Թեյմուրազյանը չշարունակեց: Հուզված էր: Ո՞ւմ մտքով կանցներ, ո՞ւմ, որ մեր զրույցից քիչ, շատ քիչ ժամանակ անց, նրան նորից կհրավիրեն Մոսկվա և առաջին համամիութենական հավաքի մասնակիցները ուղիղ հիսուն տարի անց, նույն օրը, նույն ժամին կհավաքվեն «Դինամո» մարզադաշտում: Ու հենց հայկական պատվիրակությունը հայտնվի, բոլորը ընդառաջ կնետվեն, կհարցնեն.

— Ի՞նչ եղավ այն աղջիկը, որ շատ լավ շեփոր էր նվագում: Կա՞, թե...

Մելանյա Թեյմուրազյանը կխոնարհի հայացքը, բեկված ձայնով կասի.

— Այդ աղջիկը վաղուց արդեն տատիկ է...

Վետերանները կնայեն իրենց նոսրացած շարքերին ու, այնուամենայնիվ, կմըտածեն, որ հոբելյանական հանդիսությունների մասնակիցների թիվը անհամեմատ մեծ կլիներ, եթե չլիներ պատերազմը...

## ՊԱՏԵՐԱԶՄԸ, ՈՐԻ ՄԱՍԻՆ ԹԱԽԻԾՈՎ ՈՒ ՀՊԱՐՏՈՒԹՅԱՄԲ ՊԱՏՄԵՑ ՌՈԲԵՐՏ ԱԹԱՅԱՆԸ

Տարօրինակ չէ՞, հանրապետության անվանի երաժշտագետներից մեկը, պետական կոնսերվատորիայի պրոֆեսորը, որի շնորհիվ բացահայտվել են հայկական ձայնանիշերի՝ խազերի շատ ա-









Նվագախմբի հիմնադիր Նիկոլայ Թեյմուրազյանը
Նվագախմբի երկարամյա ղեկավարներից մեկը՝ Գուրգեն Հովումյանը

Վետերաններ...

Հովումյանների երրորդ սերնդի ներկայացուցիչը նվագախմբում

1930-ական թվականներ

ռեղծվածներ, որն առաջինն է զբաղվել ազգային երաժշտության հնէագրությամբ, ձեռնամուխ եղել Կոմիտասի երգերի լիակատար հրատարակությանը, պիոներպալատի փողային նվագախումբը հիշում էր ոգևորված, կարոտով, անկեղծ ջերմությամբ: Այսինքն՝ ի՞նչն է տարօրինակ:

Ընդհակառակը, երևի շատ բնական է: «...Ուրախ համերգներ տալու առիթ դժբախտաբար քիչ ունեցանք: Ամառային մի գիշեր Լևիտանի ձայնը ողջ քաղաքը ոտքի հանեց... Իսկ առավոտյան ես փորձ ունեի պիոներպալատում: Մտա խմբասենյակ: Իննսուն հոգի լուռ սպասում էին

ինձ: Արդեն գիտեին:

— Հիմա ի՞նչ պիտի անենք,— լռությունը խզեց ինչ-որ մեկը:

— Ի՞նչ պիտի անենք,— ուսքի եկավ Վահան Թոթովենցի տղան՝ Լևոնը,— կամավոր գրվենք, բանակ գնանք...

Բայց ՀԼԿԵՄ Կենտկոմում ձգձգեցին, ձգձգեցին մեր դիմումի պատասխանը, մի օր էլ ասացին, որ մենք Երևանում էլ ենք պետք, Երևանում էլ շատ կարևոր գործեր կան: Կարևոր գործն էլ ի՞նչ էր: Ամեն առավոտ գնում էինք հավաքակայան, որ ճակատ մեկնողներին ճանապարհենք, բայց առանց նվագելու ետ էինք գալիս: Ո՞վ սիրտ ուներ մեզ լսելու: Տասնհինգ օր զուր գնալ-գալուց հետո տղաները չդիմացան, սկսեցին պահանջել, որ իրենց էլ բանակ տանեն: Տարա՛ն շատերին: Երևանում մնացածներս առաջվա նման նվագում էինք շքերթներին, պիոներական հանդեսներին, բայց անտրամադիր էինք: Քաղաքում տղամարդ չէր մնացել: Հետո աստիճանաբար հաշմանդամներ հայտնվեցին, իսկ մեծ մասը ընդհանրապես ետ չեկավ: Այդ թվում՝ մեր տղաներից շատերը: Զոհվեց սաքսաֆոնահար Գևորգ Գևորգյանը, կլարնետիստ Լևոն Թոթովենցը, բաս նվագողներ Վարդգես Նալբանդյանը, Ալբերտ Գևորգյանը... քսանհինգ հոգի: Ինչ կարող ես անել, պատերազմը մընում է պատերազմ: Մեր միակ մխիթարությունն այն է, որ նվագախումբը չըքայքայվեց, ընդհակառակը, զոհվածների տեղը նորերը եկան, խումբը մեծացավ, դարձավ հարյուր հոգիանոց մի հրաշալի կոլեկտիվ»:

## ՕՎԿԻԱՆՈՍԸ, ՈՐԻ ՄԱՍԻՆ ՊԱՏՄԵԼ Է ՆՎԱԳԱԽՄԲԻ ՕՐԱԳԻՐԸ

Նվագախմբում ինքնատիպ ավանդույթներ շատ կան, որոնցից մեկն էլ հեռավոր ուղևորությունների ժամանակ օրագիր պահելն է, ըստ որում, յուրաքանչյուրը լրացնում է միայն մի էջ, պատմում իր հետ պատահած ամենահետաքըրքի՛ր դեպքի մասին: Բացի Ծաղկաձորից ու Արտեկից, ուր լինում են համարյա ամեն ամառ, վերջին մի քանի տարում պատանի երաժիշտները համերգներ են տվել Մոսկվայում, Չեխոսլովակիայում, Իջևան—Հրազդան կառույցի տեղամասերում, Մարիական ԱՍՍՀ-ում: Սակայն ուրիշ էր այն ուղևորությունը, որի մասին տեղեկացնում են օրագրային զուսպ գրառումները:

«Ռոռա՛, այսօր՝ 1984 թվականի հունիսի մեկին, մեկնում ենք Հեռավոր Արևելք: Պրիմորիեյում համամիութենական նոր ճամբար է ստեղծվել: «Արտեկի» նըման: Մեզ հրավիրել են մասնակցելու հանդիսավոր բացմանը»:

«Ճամբարը, որ «Օկեան» է կոչվում, կարծես օվկիանոսի ալիքների վրա լողացող ճերմակ նավ լինի: Մեզնից առաջ տեղ էին հասել համամիութենական ռադիոյի և հեռուստատեսության մանկական երգչախումբը, վրացական «Մզիուրի» համույթը, Կրասնոյարսկի պիոներների պալատի խումբը... Նրանց մեծ մասի հետ ելույթներ ենք ունեցել Արտեկում, Մոսկվայում: Մենք մի քիչ հանգստացանք ու նավահանգիստ գնացինք, որ դիմավորենք վիետնամական պատվիրակությանը»:

«Ելույթ ունեցանք հանդիսավոր բացման ժամանակ: Բոլորը հիացած էին, անվերջ ծափահարում էին, ձայնում՝ «Ա՛յ, նվագախումբ, ա՛յ, նվագախումբ»:

«Ռազմածովայինների ավանդական տոնի օրը ելույթի հրավիրեցին Վլադիվոստոկի կենտրոնական հրապարակ: Հազարավոր ունկնդիրներ մեր շուրջը խիտ օղակ էին կազմել: Մի սևազգեստ տատիկ լաց էր լինում: Ի վերջո չդիմացավ, մոտեցավ, գրկի շնիկը մեզ մեկնելով ասաց.

— Թանկագիններս, իմ ամուսինը տըրամբոնահար էր, պատերազմի ժամանակ զոհվեց: Այսօր դուք շատ հուզեցիք ինձ, հիշեցրիք ողջ երիտասարդությունս: Վերցրեք, խնդրում եմ իմ սիրելի շնիկին, թող ձեզ հիշատակ մնա:

Մենք հիսուն հոգով շրջապատել էինք նրան և չգիտեինք ինչ ասենք»:

«Հայտնի ենք դարձել ողջ Պրիմորիեյում: Վլադիվոստոկի «Կրասնայա զվեզդա» թերթը գրեց մեր մասին, տեղական ռադիոն հատուկ հաղորդում կազմակերպեց: Համարյա ամեն օր այս կամ այն կազմակերպությունից գալիս, խնդրում են ելույթ ունենալ իրենց միջոցառումներին: Օր է պատահում, որ երկու-երեք տեղ ենք նվագում»:

«Հանդես եկանք ծովայինների ակումբում, կատարեցինք արևմտաեվրոպական, ռուս կոմպոզիտորների ստեղծագործություններ: Հանկարծ դահլիճից մեկը հայերեն գոռաց.

— Տղերք ջան, խնդրում ենք հայկական մի բան նվագեք, երկու տարի տանը

չենք եղել, շատ ենք կարոտել:

Լավ էր, մեզ հետ ժողովրդական գործիքներ էինք վերցրել: Հենց մեր ղեկավար ընկեր Հայկը նշան արեց, հանեցինք դհոլն ու զուռնան, թմբուկը, դուդուկը, «Քոչարի» նվագեցինք: Ինչքան շա՜տ հայ կար դահլիճում: Վեր թռան իսկույն, բեմի առաջ շրջան կազմեցին: Մյուսները զարմացած նայում էին, բայց հետո չդիմացան, միացան պարողներին: Քիչ անց ողջ դահլիճում թնդում էր մեր «Քոչարին»:

«Ավանդույթի համաձայն ամեն պատվիրակություն մի օր պիտի ներկայացնի իր երկիրը, հանրապետությունը: Այսօր մեր հերթն էր: Ելույթ ունեցավ Խաչիկ Գյանջումյանն ու պատմեց հայ ժողովրդի մասին, նկարագրեց Երևանը, Սևանա լիճը, մետրոն: Հետո ցույց տվեցինք մեր ազգային նվագարանները, կատարեցինք ժողովրդական երգեր ու պարեր: Մյուս պատվիրակությունների նման մենք էլ ազգային հուշանվերների տոնավաճառ բացեցինք ու ստացված ողջ գումարը փոխանցեցինք խաղաղության ֆոնդին: Արդեն ուշ գիշեր էր, խարույկի բոցերը մարմրում էին, բայց դեռ հնչում էր մեր երաժշտությունը: «Օկեանը» փոքրիկ Հայաստան էր դարձել»:

«Արդեն տուն ենք վերադառնում: Ճիշտ է, հին ու նոր ընկերներից, օվկիանոսից բաժանվելը դժվար է, բայց բոլորս էլ անհամբեր ենք դարձել, շտապում ենք: Շատ ենք կարոտել Հայաստանին...»:

Այստեղ ավարտվում է օրագիրը: Տըպավորությունների էջում միայն երկու գրառում կա: Առաջինը կատարել է Ալեքսանդրա Պախմուտովան. «Հրաշալի նվագախումբ է, ափսոս, որ բաժանվում ենք», երկրորդը՝ վիետնամցի երեխաները. «Մենք էլ ենք երազում նման նըվագախումբ ունենալ»:

Առայժմ, ահա այսպես է ավարտվում քաղաքային պիոներպալատի փողային նվագախմբի պատմությունը: Ավարտվո՞ւմ: Նոր ուսումնական տարվա սկըզբին, երբ ես խմբասենյակ մտա, պատից սովորականի նման ժպտաց հանգուցյալ նվագավար Գուրգեն Հովումյանի լուսանկարը, կողքից՝ որդու լուսանկարը, որը երկար տարիներ նվիրումով շարունակեց հոր գործը: Իսկ լուսանկարների տակ Գուրգեն Հովումյանի տասնամյա թոռը՝ խմբակի նորեկ սանը, սովորում էր նվագել Հայաստանի պետական հիմնը...



ՂՈՒԿԱՍ ՍԻՐՈՒՆՅԱՆ

# Ձուկն ու ջուրը

Բարձրիկ լեռան կատարին
Մի պաղ աղբյուր էր բխում,
Շող գրկի մեջ էն ջրի
Մի կապույտ ձուկ էր ապրում:

Խաղում էին գիլ-գլոր
Ձկնիկ-ջրիկ իրար հետ,
Փաթաթված զով ու թխպով,
Լեռան բույրով սիրավետ...

Պատահում էր երբեմն՝
Տարված խաղով գիլ-գլոր,
Ձուկն իջնում էր ջրի հետ
Մինչև լեռան ստորոտ:

Բայց՝ մինչ այնտեղ, ուր դեռ կար
Զով շոյանքը մայր լեռան:
Դրանից դեն՝ պրծնում էր
Աշխարհ, ճամփա, ամեն բան:

Թողած ջուրը մշտահոս,
Ետ էր դառնում մեն-մենիկ,
Դեպի տեսիլք, թուխպ ու զով,
Դեպի անուշ հայրենիք:

# Կակաչները

Կարմիր, կարմիր վառվում են
Կակաչները հուրհրան,
Ասես վառվող մոմեր են
Կանաչ սարերի վրա:
Որքան փչում է հովը
Զով ու խորունկ ձորերի,
Կակաչների կրակը
Թեժանում է ավելի:
Ցնծուն, բուրեղ այս հրին
Ով որ կպչի մեկ անգամ,
Ու՝ մի կրակ աշխարհում
Չի այրելու էլ նրան:

## ՀՈՒՆԻՍԻ 2, 1911 Թ.: ՆԵԺԻՆ:

— Ուտո՞չկին…—Ուտոչկինը մեկ օր հետո պետք է թռչի Նեժինե…Տատը կանգնել էր շեմին՝ հուզմունքից կաս կարմիր կտրած:

Համրահայտ օդաչուն իր փառքի գագաթնակետին էր, նա նոր էր բոլորել իր 35 տարին, Ռուսաստանում չէր գտնվի մեկը, որ չճանաչեր այդ բարձրահասակ, շիկահեր ու ամրակազմ օդաչուին՝ նորահայտ տարերքի տիրակալին:

Սերյոժա Կորոլյովը կանգնած էր այն հրապարակի վրա, որտեղից պետք է թռչեր օդանավը: Հինգ տարեկան Սերյոժան չէր հասկանում թե ինչ է նշանակում «թռիչք»: Թռչում են բզեզները, թռչունները, թիթեռները, բայց ինչպե՞ս կարող են թռչել մեքենաները:

Եվ ահա նա տեսավ, թե ինչպես այդ շիկահեր օդաչուն մտավ մեքենայի մեջ, ձեռքով ողջունեց մարդկանց: Մռնչացին օդանավի շարժիչները, և կաշվե հագուստով մարդն ու զինվորները անհետացան դեղին փոշու ամպի մեջ, այնպես որ, Սերյոժան ավելի շուտ զգաց և ոչ թե տեսավ, թե օդանավն ինչպես տեղից շարժվեց և թռիչքի հրապարակով առաջ սըլացավ:

Սկզբում օրորվելով, այնուհետև արագ ու հավասարաչափ՝ օդանավը վեր էր բարձրանում, նորից իջնում, մերթ ընդ մերթ անիվները հպելով գետնին, և ի վերջո պոկվեց հրապարակից:

Օդանավը վեր բարձրացավ և թռիչքի հրապարակը լցվեց հիացմունքի ու զարմանքի բացականչություններով:

Օդանավը թռչում էր… Փոքրիկ տղային մի ահավոր հուզմունք համակեց, սիրտը սկսեց արագ բաբախել, չէ՞ որ նա ինքը տեսավ, թե ինչպես մարդը մեքենայով թռավ մարդկանցից վեր, երևի թե կարող է թռչել նաև տներից էլ վեր:

1960 թվականի հունիսին, երբ տիեզերագնացների մի ջոկատ առաջին անգամ այցելեց Կորոլյովին, նա հիշեց Ուտոչկինին, տոնավաճառային հրապարակը, այն հեռավոր արևոտ օրը և անգամ դեղին փոշու հոտը զգաց…

## ՀՈԿՏԵՄԲԵՐԻ 15, 1929 Թ.: ԿՈԿՏԵԲԵԼ:

Հոկտեմբերի 15-ին, ռեկորդակիրների մեջ մեծ աշխուժություն էր տիրում: Թըռիչքների տևողությունը հասնում էր 3 ժամի, իսկ երիտասարդ օդաչու Կորոլյովը իր «Կոկտեբելով» սավառնեց 4 ժամ 19 րոպե:



# Մի վանի օր Կորոլյովի կյանքից

Կարող էին արդյոք այն ժամանակ Կոկտեբելում հավատալ, որ հրթիռի մեկնարկային քաշը, որը նա կառուցելու էր 28 տարի անց, լինելու էր 287 տոննա: Կարող էր: Միայն նա կարող էր: Այլապես այդ հրթիռը չէր կառուցվի:

## ՕԳՈՍՏՈՍԻ 17, 1933 Թ.: ՆԱԽԱԲԻՆՈ

Տրամադրությունը՝ ճիշտ այդ օրվա նողկալի եղանակի պես: Հաջողության այլևս ոչ ոք չէր հավատում: Ահա թե ինչու հաջողությունն ավելի քան անհրաժեշտ էր…

Միխայիլ Տիխոնրավովի 09 կոնստրուկցիայի հրթիռը, ի դեպ՝ դա առաջին հրթիռն էր, որ նրանք սկսեցին ստեղծել Սադովո—Սպասսկայայի տեղանքի նըկուղում, որտեղ և գտնվում էր ռեակտիվ շարժումն ուսումնասիրող խումբը, իրականում մի անհաջող կոնստրուկցիա էր: Փորձարկումների ժամանակ խափանվում էին խափանման ենթակա բոլոր մասերը:

Առաջին փորձարկումները սկսվեցին մայիսի 31-ին, Նախաբինոյի հրաձգարա-

ռում:

Հրթիռը ուղղակի փաթաթում էին խըսիրի մեջ և տրամվայով հասցնում կայարան: Տրամվայով հրթիռի փոխադրավարձը նույնն էր, որքան վճարում էին որևէ ուղաբեռ տեղափոխելու համար: Հրթիռի նմանօրինակ փոխադրումը թերևս համաշխարհային պրակտիկայում միակն էր ու անկրկնելին: Հունիսին և հուլիսին նրանց եռանդուն ջանքերով փորձարկվեց 13 հրթիռ: Ոչ մեկը օդ չըբարձրացավ: Արդեն շշուկներ էին պըտըտվում, թե՝ «Այդ անպիտան հրթիռը երբեք էլ չի թռչի...»: Կթռչի...

1933 թվականի օգոստոսի 17-ի № 43 փորձարկման արձանագրությունից.

«Աստիճանաբար մեծացնելով արագությունը, հրթիռը հասավ 400—500 մետրի բարձրության, որտեղ մեկ-երկու տատանումից հետո խափանվեց, սահուն կորագծով վայր ընկավ մոտակա անտառում և միրճվեց հողի մեջ: Թռիչքի ողջ տևողությունը՝ 13 վայրկյան...»:

Լեոնիդ Կիզիմը տիեզերքում մնաց մոտ 2,5 միլիոն անգամ ավելի երկար: Բայց այս 13 վայրկյանները շատ ավելի շատ են՝ դա սկիզբն էր: Ռեակտիվ շարժումն ուսումնասիրող խումբը շտապ լույս ընծայեց «ՀՐԹԻՌ» պատի թերթի հատուկ համարը: Այդ թերթում Կորոլյովը գրեց.

«Արձակվեց հեղուկ վառելանյութով աշխատող առաջին սովետական հրթիռը...»:



## ԱՊՐԻԼԻ 12, 1961 Թ.: ԲԱՅԿՈՆՈՒՐ:

Այդ օրը չէր կարելի անգամ օր համարել, չէ՞ որ այնպես է պատահում, որ շատ օրեր ու գիշերներ միաձուլվում են մեկ օրվա մեջ: Հրթիռը տեղադրեցին առանց որևէ դիտողության և հայտարարեցին՝ «24 ժամ՝ լիակատար պատրաստ լինելու համար»:

Ժամը 13.00-ին մեկնարկային հրապարակ ժամանեց Գագարինը՝ տիեզերագնաց-սավառնորդների միտինգի կապակցությամբ, և որն անցկացրեց Կորոլյովը:

Արդյո՞ք Կորոլյովը մտահոգ էր Գագարինի համար: Այո, իհարկե: Եվ, անշուշտ, մտահոգ էր անհամեմատ ավելի շատ, քան ինքը՝ տիեզերագնացը:

Գագարինը չէր պատկերացնում, թե ինչ մեծ մասշտաբի գործ էր նախապատրաստվում, մի գործ, որի գլխավոր մասնակիցը լինելու էր ինքը:

Երեկոյան, երբ Գագարինն ու Տիտովը



ճշտում էին առավոտվա ռեժիմը, անսպասելի նրանց մոտ եկավ Սերգեյ Պավլովիչը: Թե ինչու էր եկել Կորոլյովը, նրանք այդպես էլ չհասկացան, գործի մասին չխոսեց, փորձում էր կատակել:

— Հինգ տարի հետո հնարավոր կլինի պրոֆմիութենական ուղեգրով տիեզերք թռչել…

Յուրան և Գերմանը ծիծաղում էին հենց այնպես, քաղաքավարությունից դրդված: Կորոլյովը ժպտում էր միայն շրթունքներով: Նա այնպես լարված ու ուշադիր հայացքով էր նայում, կարծես թե նրանց առաջին անգամն էր տեսնում: Հետո նայեց ժամացույցին և դուրս եկավ առանց հրաժեշտ տալու: Տիեզերագնացները լսեցին, թե ինչպես ավտոմեքենան մոտեցավ, բացվեց դուռը և անմիջապես շրխկոցով փակվեց… Կեսգիշերվա մոտ Կորոլյովը թռիչքի հրապարակից վերադարձավ իր տնակը, որն ընդամենը մի քանի քայլի վրա էր տիեզերագնացների տնակից: Նա պառկեց, ձեռքն առավ մի ամսագիր և կարծես սկսեց կարդալ: Հասկացավ, որ ինքն իրեն խաբում է՝ նա ոչ մի տող էլ չէր կարդացել, այլ միայն նայել էր ամսագրի էջին: Ավտոմեքենա կանչեց և նորից գնաց տիեզերագնացների մոտ:

Ժամը 6 անց 50 րոպեին ավտոբուսը տիեզերագնացներին բերեց թռիչքի հրապարակ: Կորոլյովը համբուրեց Գագարինին:

Ժամը 7-ին Գագարինն արդեն տիեզերանավի մեջ էր:

Իսկ այնուհետև ստացվեց հաղորդագրություն տիեզերագնացի հաջող վայրէջքի մասին: Ինքնըստինքյան մի ինչ-որ կարճատև, չնախատեսված խնջույք տեղի ունեցավ, խմում էին շամպայն, իսկ Կորոլյովն իր դատարկ բաժակը խփեց գետնին՝ «Թող չարը խափանվի»: Հետո ինքնաթիռ, վայրէջքի վայր: «ՎՈՍՏՈԿ» տիեզերանավը սպիտակ ճոպաններով առանձնացրել էին մի շրջանի մեջ՝ հետաքրքրասեր կոլտնտեսականներից հեռու պահելու համար: Կորոլյովը պատանու ճարպկությամբ արագ անցավ ճոպանների տակով և նետվեց դեպի «ՎՈՍՏՈԿԸ», դիտանցքից նայեց ներս, և մի հայացքով կարողացավ որոշել իր թանկագին «նորածնի» վիճակը:

Հոգնածության և մի տեսակ դատարկության զգացումը Կորոլյովին թողեց միայն այն ժամանակ, երբ նա գրկեց Գագարինին և հասկացավ, որ այդ հիասքանչ տղան կենդանի է:

Դա շատ երկար օր էր: Իր կյանքի ամենաերկար օրը…

**ՀՈՒՆՎԱՐԻ 5, 1966 Թ.: ՄՈՍԿՎԱ:**

Առավոտյան նա պատրաստվում էր գնալ հիվանդանոց: Կինը՝ Նինա Իվանովնան, նրա իրերը հավաքեց մի փոքրիկ, փափուկ ճամպրուկի մեջ: Գիշերազգեստ: Հողաթափեր: Ածելի: Ատամի խոզանակ: Լսողական ապարատ: Վերջերս Սերգեյ Պավլովիչի մի ականջը սկըսել էր վատ լսել:

Երբեմն նա տարօրինակորեն սնոտիապաշտ էր դառնում և այն առավոտ շատ դառնացավ, երբ գրպանում չգտավ երկու կոպեկանոցներ, որ պահում էր գրպանում՝ երջանկություն գտնելու ակընկալությամբ:

— Սերյոժկա, դու դրամ վերցրե՞լ ես,— հարցրեց Նինա Իվանովնան:

— Այո, իհարկե…

Նրա դրամապանակում կար երեք ռուբլի, մի քանի մետաղադրամ և բնակարանի բանալին:

— Բանալին կվերցնեմ, թե չէ կվերադառնամ, իսկ դու կարող է պատահել, տանը չլինես…

Նա չվերադարձավ…

Սերգեյ Պավլովիչ Կորոլյովը մահացավ ինը օր հետո, վիրահատման ժամանակ: Մահից երկու օր առաջ լրացավ նրա ծննդյան 59 տարին:

**ՌԵՊՈՐՏԱԺ՝ ՏԻԵԶԵՐԱԿԱՆ ՍԱՐՔԵՐԻ ԵՎ ՀՐԹԻՌՆԵՐԻ ԳԼԽԱՎՈՐ ԿՈՆՍՏՐՈՒԿՏՈՐԻ ԲՆԱԿԱՐԱՆԻՑ**

Այս բնակարանը սովոր է մշտապես հյուրեր ընդունել, թեև հյուրերը սովոր չեն այն բանին, որ տանտերն այլևս չկա:

Եվ այնուամենայնիվ… Բնակարանում, նեղվածք է, և սովորական սեղանը (որը թե՛ ճաշի սեղան էր և թե՛ ծառայում էր որպես գրասեղան) ավելի մեծ է թվում: Ահա այդ սեղանի վրա հրթիռների, Երկրի արբանյակների և տիեզերանավերի մոդելներն են, իսկ պատին՝ հենց իր, Սերգեյ Պավլովիչ Կորոլյովի սեփական աշխատանքը՝ Լուսնի հսկայական մի քարտեզ: Այս ամենը այցելուներին հիշեցնում է նավահանգստին մոտեցող մի նավի, որը առաջ լողալով, իր ողջ տեսքով ավելի ու ավելի էր ահագնանում ու բարձրանում մարդկանց աչքերի առջև:

Իսկ չէ՞ որ այստեղ ամեն ինչ մնացել է այնպես, ինչպես կար, հատուկ նպա-



տակով ոչ մի փոփոխություն չի արվել այն օրից, երբ որոշում ընդունվեց բնակարանը վերածել ակադեմիկոս Ս. Պ. Կորոլյովի տուն-թանգարանի:

Այս բնակարանից էր, որ Կորոլյովը թռավ Բայկանուր, և մեկնեց հատկապես գիշերը, մեկընդմիշտ իր կողմից ընդունված որոշման համաձայն՝ ժամանակ չըկորցնելու և ցերեկային ժամերը ճանապարհի վրա զուր չվատնելու համար:

Այս բնակարանում նա հաճախ էր տարվում իր սովորական ընտանեկան հոգսերով, որոնցից ամենևին էլ չէր խուսափում: Պե՞տք էր օգնել խոհանոցի գազօջախի մոտ: Հաճույքով: Իսկ եթե պետք էր ծաղիկներ տնկե՞լ: Հրաշալի զբաղմունք է, հատկապես եթե, ինչպես մի անգամ, հողից բոլորովին անսպասելիորեն մի փայտ ես հանում, որը քեզ երջանկություն է խոստանում:

Իսկ հետո... Հետո, անշուշտ, աշխատասենյակ:

Իր աշխատասենյակում Սերգեյ Պավլովիչը մնում էր մինչև ուշ երեկո: Ընկերների վկայությամբ՝ նրան հաճախ կարելի է տեսնել իր աշխատասենյակի պատին ամրացված գրատախտակի մոտ՝ սովորության համաձայն նա ոչ թե թղթի, այլ գրատախտակի վրա էր հաշվարկներ անում: Վերևից ներքև հարյուրավոր թվեր ու նշաններ էր գրում ու ջնջում, հաճախ սրբում խոնավ ջնջոցով և անգամ մեկ շաբաթ անց կարող էր վերականգնել գրատախտակի վրա այդ բոլոր հաշվարկները:

Իր տեխնիկական դրադարանի գրադարակներից նա շատ արագ էր գտնում իրեն անհրաժեշտ գիրքը:

«Երկու հազար հատոր գիրք,— նկատում է Ի. Վագանովը,— կարդում էր առաջին էջից մինչև վերջին էջը: Գլխավոր կոնստրուկտորը լավ էր տիրապետում արագ ընթերցման տեխնիկային»:

Կարող էր մեջբերումներ անել «Պատերազմ և խաղաղություն» վեպից, ի դեպ՝ շատ հաճախ էր վերընթերցում Լև Տոլստոյի գործերը, բացառությամբ «Հարություն» վեպի, որի նկատմամբ նա իր հատուկ վերաբերմունքն ուներ:

Կոնստրուկտոր Ա. Իվանովը՝ առաջին տիեզերական սարքերի և տիեզերանավերի ստեղծման աշխատանքների մասնակիցը, այսպես է մտաբերում Կորոլյովի հետ իր զրույցը.

«— Իսկ դուք եղե՞լ եք Ռուսական թանգարանում,— հարցրեց Սերգեյ Պավլովիչը:

— Եղել եմ:

— Իսկ Բրյուլլովյան սրահո՞ւմ: Գիտե՞ք, թե որ նկարն է ինձ վրա ապշեցուցիչ տպավորություն թողել հենց առաջին անգամ և ընդմիշտ, մինչև կյանքիս վերջը: Այվազովսկու «Ալիքը»: Դա մի զարմանահրաշ կտավ է: Այն կարելի է ժամերով դիտել: Ով և ինչ էլ ասեն Այվազովսկու մասին, ես կասեմ՝ նա մեծ վարպետ է: Լսել եմ, որ ոմանք նրան արհեստավոր են անվանում, թող որ այդպիսի արհեստավորներ շատ լինեն: Իսկ մե՞նք, մի՞թե մենք էլ արհեստավորներ չենք: Ի՞նչ կասեք: Մեր արհեստը դըժվար է, դժվար: Բայց, սատանան տանի, մեր գործը հետաքրքիր է և ոչ սովորական»: Հատկանշական է, որ նա գեղանկարչությունից անսպասելիորեն էր անցնում իր սիրած գործին: Այդպես է եղել միշտ: Այստեղ՝ հյուրասենյակում, նա հաճախ էր միացնում Չայկովսկու առաջին դաշնամուրային կոնցերտի ձայնապնակը և երաժշտությունն ավարտվելուն պես անցնում էր աշխատասենյակ: Աշխատանքով տարվելու նրա ոգևորությունն այնքան հայտնի էր, որ Ս. Պ. Կորոլյովի մահվան առաջին տարեդարձին նվիրված նիստին ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի թղթակից-անդամ Բ. Վ. Ռաուշենբախը բացականչեց.

«Թվում է, թե հիմա ուր որ է կբացվի դուռը, ներս կմտնի Սերգեյ Պավլովիչը և կասի՝ «Ի՞նչ եք այստեղ նստել, աշխատել է պետք»:

# ԲԱՐՈՅԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԱՅԲՈՒԲԵՆ

ՊԱՎԵԼ ՊՈՊՈՎԻՉ
Տիեզերագնաց-օդաչու,
Սովետական Միության
կրկնակի հերոս




Երբ պատերազմն ավարտվեց, ես տասնվեց տարեկան էի: Այսօր ձեզանից շատերն ու ձեզնից ավելի փոքրերն էլ արդեն հաստատ գիտեն՝ ինչ մասնագիտություն ընտրել, ուր գնալ սովորելու: Եվ մեծամասնությունը, որպես կանոն, ձգտում է պատվավոր ու «մոդայիկ» մասնագիտություն ձեռք բերել: Երբեմն դա տեղի է ունենում ձեր ծնողների պարտադրանքով: Եվ դուք էլ ավելի շատ մըտածում եք հայտնի, ճանաչված մարդ դառնալու, փառքի մասին և ոչ թե հենց մասնագիտության:

Բայց կուզենայի ճշգրտել. գոյություն չունեն նման մասնագիտություններ՝ «ճանաչված դերասան», «ճանաչված դաշնակահար»: Կա ուղղակի դերասան, ուղղակի դաշնակահար: «Ճանաչված»-ը դիպլոմի հետ չի տրվում, այլ՝ տաղանդի ու մեծ աշխատանքի համար: Եվ նկատենք, որ ճանաչված լինել (դրական իմաստով) միայն արտիստների, գրողների, նկարիչների ու երաժիշտների մենաշնորհը չէ: Մի՞թե կա մեկը, որ լսած չլինի վիրաբույժ Ամոսովի, շինարար Զլոբինի, երկրագործ Մալցևի մասին: Մարդուն փառք է բերում ոչ թե մասնագիտությունը, այլ նրա վերաբերմունքը աշխատանքի, գործի նկատմամբ:

Ինչպե՞ս ընտրել հոգեմոտ, սիրելի մասնագիտություն: Հավանաբար, գլխավորն այն է, որ զբաղվես քեզ հետաքրքրքրող գործով և չվախենաս դժվարություններից: Հավատացեք, որքան ավելի դժվար է խնդիրը, որքան ավելի շատ ուժ է ներդրված այն լուծելու համար, այնքան ավելի է բերկրանք պատճառում հաղթանակի զգացողությունը. «Ես կարողացա նաև ա՛յս անել»:

Իսկ ի՜նչ զարմանալի տարիք է պատանեկությունը: Կարելի է շատ որոնել, շատ բան փորձել: Եվ չվախենալ սխալվելուց: Ցավալի է, երբ երեխաները մեծանում են, սովորական «շրջանակներում»՝ դպրոցից փողոց, փողոցից երեկույթ...

Բայց այսքանն, այսպես ասած, լիրիկական շեղում էր...

Հաց վաստակելը դժվար բան դուրս եկավ: Աշխատում էի գիշերային հերթափոխի հետ, քանի որ ցերեկը դպրոց էի գնում: Չոփ էի դարձել: Զգում էի, որ ուժերս արագորեն ինձ լքում են: Արձակուրդներին Բելայա Ցերկովից եկավ ընկերս՝ Լյոշա Կոմպանեեցը: Նա սովորում էր արհեստավորական ուսումնարանում: Տեսնելով իմ վիճակը, կարճ կապեց.

— Դու ինձ հետ պետք է գաս արհեստավորական ուսումնարան:

Ուսումնարանն ավարտելուց հետո ընդունվեցի Մագնիտոգորսկի արդյունաբերական տեխնիկում: Այդպես իմ կյանքի մեջ մտավ հեռվից իր բազմաթիվ ծըխնելույզներով նավ հիշեցնող ծխոտ Մագնիտկան:

Երկինքն ինձ ձգեց մի քիչ ավելի ուշ: Մի անգամ մեզ մոտ տեխնիկում էր եկել աերոակումբի աշխատակիցը: Նա պատմեց ինքնաթիռների, օդաչուի մասնագիտության մասին: Մեր խումբը շունչը պահած լսում էր նրան: Առաջարկեց՝ ովքեր դպրոցում «պոչ» չունեն, կարող են գալ աերոխմբակ: Ցուցակագրվեցին ինը տըղա, երեք աղջիկ: Համարձակությունս չբավականացրեց ձեռք բարձրացնելու ու ասելու՝ ինձ էլ գրեք: Բայց ես չհամբերեցի. օդաչուի ետևից դուռը դեռ չէր փակվել, որ նետվեցի նրա կողմը: Սիրտս թպրտում էր, զգում էի, որ եկել է իմ կյանքի գուցե ամենակարևոր պահը: Գիտեի, որ ընտրություն եմ կատարում...

Ինչպե՞ս պետք է մարդն իր մեջ ոգու ուժ դաստիարակի: Ամենալավ միջոցն, իմ կարծիքով, աշխատանքն է: Ամենասարսափելի թշնամիները ծուլությունն ու թափթփվածությունն են: Պետք է աշխատես քո մեջ զսպել, խեղդել «չե՛մ ուզում»-ը և ասես՝ «Ես պե՛տք է...»:

Ցանկություն չկա՞ լիցքային վարժություններ կատարել, ուզում ես մի քի՞չ էլ քնել, ուժ հավաքիր, կամք, ու վեր կաց: Բոլորը ծխում են՝ իսկ դու մի ծըխիր: Ուզում ես հեռուստացույցով ֆիլմ

նալել, բայց դասերդ դեռ չես սովորել, ուրեմն՝ պետք է նստել գրասեղանի առջև… Աստիճանաբար կզգաս, որ տիրապետում ես քո զգացմունքներին, կառավարում ես քո արարքները, սովորություններդ: Դա մեծ քայլ է: Եվ պետք էլ չէ մտածել, թե կգա մի պահ, երբ կկարողանաս ինքդ քեզ ասել.

«Վերջ, ես արդեն ճանկեցի աստծու մորուքը, և հիմա կարելի է հանգստանալ»: Հանգստացար՝ ուրեմն քեզնից ձեռք քաշիր…

Ահա մեզ ընդունեցին տիեզերագնացների ջոկատ: Մեզնից մի քանիսին թըվում էր, թե վերջ, նպատակին հասել ենք, և կարելի է մի փոքր, շատ քիչ հանգստանալ, անջատվել: Ինչպես ձեզ հավանաբար հայտնի է, տիեզերագնացների ջոկատի անդամներից բոլորը չէ, որ եղել են տիեզերքում… Իսկ չէ՞ որ նրանք տաղանդավոր մարդիկ էին, բայց… Մենք միասին էինք պատրաստվում, միասին էինք ուրախանում ու տըխրում:

Առաջին ջոկատը միասնական ընտանիքի պես էր ապրում: Երբ մեզանից մեկի հետ դժբախտություն պատահեց (նա լողանալիս ջարդեց ողնաշարը), դա հարված էր բոլորիս: Հեռացողից բաժանվում էինք ինչպես ամենամոտ ու ամենաթանկ մարդուց… Իսկ տիեզերք թռչելու նոր թեկնածուներին մեր մասնագիտությունը ներկայացնում էր ամենադաժան պահանջները: Ներողամիտ վերաբերմունքի մասին խոսք չէր կարող լինել: Եվ ինքներս էինք մեր ամենախիստ դատավորները:

Իսկ նախապատրաստությունը կրում էր և կրում է ամենաբազմազան բնույթ. օրինակ՝ վերցնենք «դիմացկունության փորձը»: Այն օգնում է արտակարգ ծայրահեղ իրավիճակում չկորցնել գլուխը և ճշգրիտ որոշումներ կայացնել:

Պատահում է՝ խումբն ուղղաթիռով իջեցնում են միջինասիական մի ինչ-որ անապատ: Ուղղակի՝ ավազաբլրի վրա: Իսկ ավազաբլուրն՝ ասես շիկացած թավա: Եվ շուրջբոլորդ՝ այդ տաք ավազը: Ստվեր միայն այնտեղ կա, որտեղ բժիշկներն են կայանել: Բայց մինչև նրանց ճամբարը հինգ-յոթ կիլոմետր է: Գուցե ասեք՝ ինչ է որ հինգ կիլոմետրը: Մարդ որ ուզենա, միանգամից երեք-չորս կիլոմետր կկտրի-կանցնի: Եվ ահա ճամբարն արդեն երևում է, ոնց որ քթիդ տակ, մնում է մի երկու ոտք տեղ: Երևալը՝ երևում է, բայց մարդը շարժվել չի կարողանում, ոտքերը չեն ենթարկվում: Հետո էլ՝ քամի, ավազախառը քամի: Որոշում է մի քիչ շունչ առնել: Իջնում է թմբի տակ, վրան է խփում և սպասում, սպասում է մինչև ուժ հավաքի: Բայց՝ ապարդյուն: Վիճակն ավելի է վատանում. շոգը, տոթը վերջնականապես ուժասպառ են անում, քամում մինչև վերջին կաթիլը: Ի՞նչ անել: Այնինչ պետք էր վրան խփել և սպասել գիշերվան, քանի որ գիշերով տասը կիլոմետր էլ կարելի է անցնել:

Վերջին տարիներին բարձրացել է տիեզերագնացների գիտական նախապատրաստման նշանակությունը: Ինչ խոսք, դա պատահական չէ: Տիեզերքը ավելի ու ավելի է դառնում «աշխատանքային» վայր: Այս առումով ավելի պատասխանատու է դառնում տիեզերագնացի դերը՝ որպես անհատ հետազոտողի: Ինչ ասես, որ չենք դարձել տիեզերքում. էլ աստղագետ, էլ երկրաբան, էլ բժիշկ, էլ քիմիկոս, և նույնիսկ մետալուրգ:

Եվ տիեզերքում, և երկրի վրա ծանր է առանց ընկերների: Տիեզերքում՝ գուցե ավելի: Ես սիրում եմ իմ ընկերներին: Նրանց մոտ եմ գնում, երբ դժվար է, երբ խորհրդի կարիք ունեմ: Մեկ անգամ չէ, որ Ալեքսեյ Կոմպանեեցը կտրուկ փոխել է իմ ճակատագրի ընթացքը: Նըման մի մարդ ինձ համար եղավ նաև Յուրի Գագարինը: Նա արտասովոր բարի էր իր բարեկամների ու ընկերների նկատմամբ, նրան ամեն ինչ կարելի էր խնդրել: Դա, սակայն, չի նշանակում, որ աշխատանքում «ախպերավարի» էր պահում իրեն: Նա առաջինն էր նկատում ցանկացած անկարգություն, բացթողում և խիստ էր կարգը խախտողի նկատմամբ:

Նա համաշխարհային ճանաչման հասավ քսանյոթ տարեկանում և զոհվեց երեսունչորսում, բայց այսօր էլ ես նրան զգում եմ իմ կողքին: Եվ դա ինձ շատ է օգնում:

Պետք է կարողանալ ընկերություն անել: Եթե սրտիդ մեջ նախանձ ու սուտ կա, երբեք իսկական ընկեր չես ունենա: Իսկ տիեզերքում ընկերոջ նկատմամբ վստահությունը հատուկ իմաստ է ստանում:

Եվ մի բան էլ. մեր աշխատանքը շատ լուրջ է: Ու հատկապես այդ պատճառով էլ երբեմն չպետք է մոռանալ հումորի մասին: Այդ զգացողությունն անընդհատ պետք է մեզ հետ լինի: Ե՛վ երկրում, և՛ տիեզերքում: Այսպիսի մի պատմություն



Նկարը՝ ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ

եմ հիշում:

Բոլոր մարդիկ, ինչպես գիտեք, բաժանվում են երկու մասի: Առաջինները (որ գերակշռում են) նրանք են, ովքեր այնքան էլ չեն հավատում թռչող ափսեների գոյությանը, մյուսները նրանք են, ովքեր պնդում են, որ սեփական աչքերով են տեսել դրանք: Անձամբ ես, ինչ խոսք, ինձ երկրորդների թվին եմ դասում: Իմ հանդիպումն այդ չբացահայտված թռչող օբյեկտների հետ տեղի ունեցավ «Սալյուտ—3»—«Սոյուզ—14» ուղեծրային կոմպլեքսում:

Ծանր ու դժվար մի օր էր: Ավարտելով աշխատանքը, վերադարձա նավակողի մոտ ինձ հատկացված տեղը, մի քիչ կարդացի ու ննջեցի: Երևի մի երկու ժամ քնել էի, իսկ հետո զգում եմ. կողմնակի ինչ-որ մեկը տիեզերանավ է մտնում: Ես զգաստացա, իսկ անծանոթն ուղղակի դեպի ինձ է գալիս և հանկարծակի հարձակվում: Ամբողջ ուժով դեմքիս է խփում՝ մեկ մի այտիս, մեկ՝ մյուս: Կասկած լինել չէր կարող. դա այլմոլորակային էր, որ աննկատ կերպով մեր տիեզերանավն էր թափանցել իր թռչող ափսեից: Մի այլ դեպքում ես հավանաբար կկռվեի, կպաշտպանվեի, բայց զգուշում եմ բարկությունս. անհրաժեշտ է այդ արարածին պահպանել գիտության համար: Օգնության եմ կանչում ընկերոջըս՝ Յուրի Արտյուխինին: Նա ոգևորում է ինձ, կոչ է անում տղամարդավարի, բայց խնամքով վարվել: Ես չդիմացա, և այնպես շրմփացրի այդ այլմոլորակայինին, այնպես ուժեղ, որ... միանգամից արթնացա:

Ինչ տեսնեմ. գիրքը, որ քնելուց առաջ կարդում էի, լողում է կայանում, իսկ նրա թերթերը թափահարվում ու զարկվում են դեմքիս: Երբ հասկացա, թե ինչ է տեղի ունեցել, երկար ծիծաղում էի: Արտյուխինն էլ հետս: Իսկ ինչն է ավելի լավ ամրացնում, վերականգնում ուժերը, որ այնքան անհրաժեշտ են մարդուն տիեզերքում, քան ծիծաղը:

Ինչ վերաբերվում է չբացահայտված թռչող օբյեկտներին, չգիտեմ՝ ընդհանրապես դրանք գոյություն ունե՞ն, թե՞ ոչ: Եվ գուցե ավելի լավ է, որ չգիտեմ: Եթե մենք՝ մեծահասակներս, իմանայինք բոլոր հարցերի պատասխանները, ի՞նչ կմնար անելու ձեզ և նրանց, ովքեր գալու են մեզ փոխարինելու երկրի վրա ու տիեզերքում:

ՀԱՅԿ ԽԱՉԱՏՐՅԱՆ

# Տեղանունը պատմում է:



## ԱՐԶՆԻ

Ասորիների դեմ մղած կռվի ժամանակ զոհվում է Հայոց աշխարհի տեր Արա Գեղեցիկը: Ասորիների Շամիրամ թագուհու հրամանով ռազմադաշտում ընկածների մեջ որոնում և գտնում են Արայի դիակը: Այն տեղը, ուր գտնում և զննում են Արային, հետագայում կոչվում է Արային զննի, որ սեղմվում ու դառնում է Արզնի:

Շամիրամը հույս ուներ Արային կենդանացնել արալեզ շների օգնությամբ: Ասում են՝ երբ դա չի հաջողվում, ասորի գիտուններից մեկը թագուհուն խորհուրդ է տալիս Արա Գեղեցիկի դիակը լողացնել Արզնիի հանքային աղբյուրների ջրերում: Իրավ է, բուժիչ ջրերն էլ չկենդանացրին Արային, բայց հեռավոր ժամանակներից սկըսած՝ այդ աղբյուրները համբավավոր դարձան: Եվ Արզնիի բուժիչ ջրերի մասին ստեղծվեց թևավոր մի խոսք. «Ճիշտ է, Արզնիի ջուրը չկենդանացրեց Արային, բայց կորացած հազար մարդու ողնաշար ուղղեց»:

Արզնին ավան—բուժարան է Աբովյանի շրջանում, Հրազդան գետի կիրճում և ձախափնյա սարավանդի վրա: Ամեն տարի Միության տարբեր ծայրերից այստեղ բուժվելու ու հանգստանալու են գալիս հազարավոր մարդիկ:

## ԲԱՐԱԲԱԹՈՒՄ

Ողջի գետի ձախափնյա բարձունքի վրա հնում եղել է մի գյուղ: Մի քանի տարի առաջ Բարաբաթում բարձունքի համարյա ձիգ լանջերին մեծ ճարտարությամբ կառուցվեցին գեղեցիկ ու բազմահարկ բնակելի շենքեր, որոնք գիշերային ժամերին նմանվում են երկնքից կախված կանթեղափնջի:

Զրույցն ասում է, թե շատ դարեր առաջ, Բարաբաթում գյուղում մի պառավ կին էր ապրում: Երբ թշնամին մտավ Սյունաց աշխարհը, պառավն իր յոթ կտրիճ որդիներին ուղարկեց պաշտպանելու հող հայրենին: Տղաները քաջաբար մարտնչեցին, բայց բոլորն էլ ընկան մարտում: Մայրը հոգու խորքում մի հույս էր փայփայում՝ գուցե յոթից մեկը ողջ է մնացել և պիտի տուն վերադառնա: Պառավն ամեն օր նստում էր բարձունքի վրա, որտեղից երևում էր Ողջի գետի ձորահովտի կեսը, աչքերը հառում հեռուն: Սպասում էր, սպասում, բայց որդիներից ոչ մեկը չէր վերադառնում: Այս կողմերով անցնող ու դարձող մարդիկ, որոնք տեսնում էին, թե պառավն ինչպիսի համբերությամբ է ըսպասում որդիների վերադարձին, բարձունքը կոչեցին Պառավի թումբ: Այդպես Պառավի թումբ, Պառավի թումբ ասելով՝ բարձունքն ու գյուղը կոչվեցին Պառավաթումբ, որ հետո հնչյունափոխվեց ու դարձավ Բարաբաթում: Բարաբաթումը հետո դարձավ ավան, իսկ այսօր Ղափան քաղաքի թաղամասերից մեկն է:

## ԲԱԳՐԱՏԱՇԵՆ

Նոյեմբերյանի շրջանում, Դեբետ գետի աջ ափին, Բագրատաշեն ավանն է: Սա հայկական մրգերի մեծ շտեմարան է: Ծիտակները հավաստում են, թե այստեղ աճող նարնջենին ամենագեղեցիկ ու ամենահամեղ դեղձն է աշխարհում: Ավանի պտղաբուծական «Ջեյթուն» սովետական տնտեսությունը հիմնադրել և 1949—71 թըվականներին ղեկավարել է սոցիա-

լիստական աշխատանքի հերոս Բագրատ Վարդանյանը:

Հողի մարդ էր Բագրատը: Նա այստեղ եկավ Էջմիածնի շրջանի Արագած գյուղից: Այն ժամանակ ավանի չորս բոլորը խամ ու խոպան հողեր էին, և մարդիկ չէին հավատում, թե այստեղ կարող է տարածվել մրգերի բուրմունքը: Բայց, ահա, Բագրատի շուրջը հավաքված այգեգործները ամայի հողերը դարձրին այգեստան:

Եվ խոպան հողերն այգեստան դարձնող աշխատավորի անունով 1971 թվականին ավանը կոչվեց Բագրատաշեն:

# ԲՅՈՒՐԱԿԱՆ

Գյուղեր կան, որոնց անուններն ավելի շատ են տարածվում աշխարհում, քան մեծ քաղաքներինը: Այդպիսին է Բյուրականը, որը գտնվում է Աշտարակի շրջանում, Արագած լեռան հարավ-արևելյան լանջին: 1946 թվականին այստեղ հիմնադրվել է Բյուրականի աստղադիտարանը, որի ղեկավարն է (հիմնադրման օրից) ակադեմիկոս, աստղաֆիզիկոս Վիկտոր Համբարձումյանը: Բյուրականը աստղագիտական համաշխարհային խոշոր կենտրոններից է: Այս աստղադիտարանի գիտական հետազոտությունների հիմնական ուղղություններն են գալակտիկայի և նրա բաղադրիչների կառուցվածքը, անկայուն աստղերի և միգամածությունների սպեկտրալուսաչափական, գունաչափական և բևեռաչափական հետազոտությունները, ռադիոաստղագիտությունը, աստղային կոսմոգոնիան, գերխիտ աստղային կոնֆիգուրացիաների, ճառագայթման տեղափոխման տեսությունը, արտագալակտիկական աստղագիտությունը: Բյուրականի աստղադիտարանը 1967 թվականին սովետական աստղագիտական հիմնարկների մեջ առաջինը պարգևատրվել է Լենինի շքանշանով:

Ոչ ոք չի վավերացրել Բյուրական գյուղի հիմնադրման տարեթիվը: 10-րդ դարի պատմիչ Հովհաննես Դրասխանակերտցի կաթողիկոսը, որն առաջինն է հիշատակում Բյուրականը, գրում է այստեղ եղած ամրոցի ու վանքի մասին, հավաստում, որ Սուրբ Հովհաննես եկեղեցին կառուցված էր «հաստահեղյուս կոփածո քարերով՝ պերճապաճույճ շքեղությամբ և նկարակերտ հորինվածքով»:

Իսկ զրույցը մեզ տանում է Հովհաննես Դրասխանակերտցու ժամանակից մի հազարամյակ էլ այն կողմ, երբ հայերը դեռ պաշտում էին իրենց հեթանոս աստվածներին:

Մեր հեթանոս հները Արագածի լանջին ամրոց են կառուցում: Անունը տալը թողնում են քրմերին: Նրանցից մի աստղահմա, որ աստղերի օգնությամբ գուշակություններ էր անում, նայում է աստղազարդ երկնքին և երազում: Երկնքի աստղերը հավերժական դյուցազուններ են, մտածում էր նա, որոնք պիտի իջնեն երկրի վրա և օգնության հասնեն մեզ, հենց որ ամրոցի պարիսպների տակ թշնամի երևա: Եթե աստղերը գան ու խառնվեն մեր 120 պաշտպաններին, ապա ամրոցը կդառնա անառիկ: Բայց ինչքա՞ն կլինեն դրանք, ինքն իրեն հարցնում է աստղահման: Փորձում է հաշվել, բան չի ստացվում:

—Շատ են,— բացականչում է նա,— բյուրավոր են, բյուրական են, բյուրական են:

Եվ այդպես ամրոցն ու գյուղը կոչվեցին Բյուրական: Բյուր գրաբարում նշանակում է տասը հազար, ընդհանրապես՝ բազմաթիվ, անհամար: Ական մասնիկը հին հայերենում նշանակել է ընդարձակ, մեծ տարածք (այդպես են կազմված Վասպուրական նահանգի և էլի ուրիշ հայկական գավառի անունները), նաև՝ շատ: Հետևապես՝ Բյուրական բառացի նշանակում է բազմաբազում:

Հիմա նորից անդրադառնանք աստղահմա քրմերին: Նրանք ոչ մի աստղ էլ երկնքից ցած չիջեցրին, և հայկական բերդն էլ անմատչելի չմնաց: Բայց աստղերի հետ հայկական զրույցը սերնդեսերունդ շարունակվեց մինչև Վիկտոր Համբարձումյանը: Հիմա Բյուրականը հին ու նոր աստղերի մասին երկնքից տվյալներ է ցած իջեցնում և մարդու ոտնատեղի համար տիեզերական իր բաժին արահետր բացում:

ՎԼԱԴԻՄԻՐ ԿՈՐՈԼԵՆԿՈ

# Կրակները

Մի անգամ, վաղուց էր, խավար աշնանային մի երեկո, ինձ վիճակվեց նավարկել մռայլ սիբիրյան գետով: Հանկարծ գետի ոլորանում իմ դիմաց, մթին լեռների ետևից կրակ առկայծեց:

Փայլատակեց պայծառ, ուժեղ, բոլորովին մոտ:

— Դեհ, փառք աստծու,— ասացի ես ուրախությամբ,— մոտակայքում գիշերելու տեղ կա:

Թիավարը շուռ եկավ, ուսի վրայով նայեց կրակին ու նորից անտարբերությամբ ուժ տվեց թիերին:

— Հեռո՛ւ է:

Ես հավատ չընծայեցի, կրակն այդպես կանգնած՝ աստիճանաբար ելնում էր անորոշ խավարից: Իսկ թիավարն իրավացի էր, իրոք որ, հեռու է:

Գիշերային այդ կրակների յուրահատկությունն է՝ մոտենալ ճեղքելով խավարը, և՛ հույս ներշնչել, և՛ հրապուրել իր մոտիկությամբ: Թվում է, ահա թիակի երկու-երեք հարված ևս, և տեղ ես հասել... Մինչդեռ հեռո՛ւ է...

Եվ դեռ երկար նավարկեցինք մենք խավարչտին, թանաքանման գետով: Կիրճերն ու ժայռերը դուրս էին լողում, առաջ գալիս, անցնում ու կորչում ասես անվերջանալի հեռուներում, իսկ կրակը շարունակ առջևում էր, երփներանգելով ու իր կողմը ձգելով՝ միշտ այնպես մոտիկ և միշտ այնպես հեռավոր...

Այժմ ես հաճախ եմ հիշում ժայռոտ լեռների մեջ սեղմված այդ մռայլ գետը և այդ կենդանի կրակը... Շատ կրակներ առաջներում և հետո էլ միայն ինձ չէ՛, որ գրավել են իրենց մոտիկությամբ: Բայց կյանքը հոսում է շարունակ նույն մռայլ ափերով, իսկ կրակները տակավին հեռու են: Եվ նորից պետք է ուժ տալ թիերին: Բայց և այնպես... առջևում այնուամենայնիվ կրակներ են...

Թարգմանեց Է. ՊՈՂՈՍՅԱՆԸ

---

# Բացիկը՝ մեր բարեկամը

115 տարի առաջ Ռուսաստանում երևան եկան առաջին բաց նամակները: Հիշեցնենք, որ ծրարներում ուղարկվող հաղորդագրությունները անվանում էին «բաց նամակ», որից էլ հետագայում ծագեց և համընդհանուր տարածում գտավ կարճ ու գեղեցիկ «բացիկ» անունը:

1865 թ. նոյեմբերի 30-ին, Կարլսրուե քաղաքում կայացած գերմանական փոստային միության կոնֆերանսում աշխարհում առաջին անգամ քննարկվեց փոստային բացիկների ստեղծման ու տարածման հարցը: Այդ առաջարկության հեղինակն էր պրուսական ավագ փոստային կառավարիչներից մեկը՝ Հենրիխ Ֆոն Շտեֆանը, որին իրավամբ կարելի է համարել փոստային բացիկների «գյուտարար»:

Եվ ահա 1869 թ. հոկտեմբերի 1-ին Վիեննայում վաճառքի հանվեցին աշխարհում առաջին բացիկները՝ պատրաստված հաստ, դեղնավուն թղթից: Հասցեի համար նախատեսված երեսին կար մակագրություն՝ «Բացիկ թղթակցությունների համար», իսկ հակառակ կող-



Ղարաքիլիսա, ընդհանուր տեսարան



Աստաֆյան (Աբովյան) փողոց
(նախասովետական բացիկ)



Երևան, բրինձ մաքրելու գործարան



Երևան, Աբովյան փողոց, բացիկ
տրամվայով, 1936 թ.

մը լրիվ մաքուր էր և ծառայում էր հաղորդագրություններին: 1870 թ. կեսերին երևան եկան առաջին պատկերազարդ բացիկները: Կարճ ժամանակում դրանք տարածվեցին ամբողջ աշխարհով մեկ, ու բացիկների առավելությունը մյուս փոստային առաքումների նկատմամբ ակնհայտ դարձավ: Պատահական չէր, որ 1874 թ. Բեռնում կայացած Միջազգային փոստային կոնգրեսում, եվրոպական և ամերիկյան 22 պետությունների ներկայացուցիչների կողմից հիմնադրված Համաշխարհային փոստային միությունը նույնպես անդրադարձավ արդեն քաղաքացիականություն ստացած բացիկներին: Կոնգրեսը հավանություն տըվեց Հենրիխ Ֆոն Շտեֆանի առաջարկությանը՝ վերացնել մինչ այդ տարբեր երկըրներում գոյություն ունեցող ամենաբազմազան փոստային սակագուցակները և բացիկների համար սահմանել միասնական չափ՝ 90. 140 մմ: 1925 թվականից բացիկները սկսեցին թողարկվել 105. 148 մմ չափսերով: Ինքնին հասկանալի է, որ բացիկների առաջին հրատարակությունները աչքի չէին ընկնում իրենց թեմատիկ և պոլիգրաֆիկ բազմազանությամբ. դրանք պարզունակ ու միօրինակ էին: Սկզբում թողարկվում էին միայն սև ու սպիտակ պատկերազարդ բացիկներ, իսկ շուտով՝ նաև գունավոր, բայց դեռևս ոչ կատարելագործված լուսանըկարներ: Երբ առաջին համաշխարհային պատերազմի նախօրյակին համընդհանուր տարածում ստացավ օֆսեթ տպագրական եղանակը, բացիկների թողարկման գործում արմատական հեղաշրջում կատարվեց. ավելացավ դրանց տպաքանակը: Այս ամենը շվեյցարական որոշ ֆիրմաների տերերին հսկայական շահույթներ բերեց: Այսպես. Լա Մանշի վըրայով առաջին անգամ սենսացիոն թըռիչք իրագործած (1909 թ.) ֆրանսիացի օդաչու Լուի Բլերիոյի դիմանկարով բացիկն այնպիսի եկամուտ բերեց, որի մասին չէին երազել անգամ հրատարակիչները: Պակաս չվաստակեցին նաև Սաութհեմպթոնից Նյու Յորք 1912 թ. առաջին և ճակատագրական ուղերթը կատարող ժամանակի խոշորագույն շոգենավի՝ «Տիտանիկի» պատկերով բացիկի հրատարակիչները: Դարասկզբին մեծ թիվ էին կազմում այն հյուրանոցները, որոնց տերերը տրամադրում էին այցելուի ճաշակին համապատասխան բացիկներով պաստառապատված սենյակ-



Աբովյան փողոցը 1954 թ. բացիկում

ներ։ Նման խորամանկ ռեկլամը հյուրանոցատերերին մի քանի անգամ ավելի շահույթ էր բերում։

Առաջին ռուսական բացիկը ևս առանց նկարի ու նամականիշի էր, պատրաստված՝ մոխրասպիտակավուն թղթից։ Ինչպես պրուսական, այնպես էլ ռուսական փոստային ծառայության աշխատողներին մտահոգում էր ուղարկվող հաղորդագրության ոչ ծածուկ ձևը, և պատահական չէր, որ սկզբնական շրջանում բացիկների վրա հայտնվեց «Փոստային կառավարչությունը նամակի բովանդակության համար պատասխանատու չէ» ինքնապաշտպանողական մակագրությունը։

Մինչհեղափոխական Ռուսաստանի բացիկ թողարկող ֆիրմաները, որպես կանոն, օգտվում էին Արևմտյան Եվրոպայի մասնավորապես՝ Շվեդիայի, Գերմանիայի, Ֆրանսիայի հրատարակչություններից։ Ուրախությամբ պետք է նշել, որ հրատարակությունների թվում քիչ չեն նաև ռուսական կայսրության տարածքում գտնվող հայկական գյուղակների ու քաղաքների, հայ կնոջ ու տղամարդու լուսանկարներով փոստաքարտերը։ Պետք է նշել նաև, որ դրանցից շատերը ծնվել են հայազգի պրպտուն լուսանկարիչների ու ազգասեր հրատարակիչների ազնիվ ջանքերի շնորհիվ։ Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակից մի քանի օր անց կրպակներում հայտնվեցին նորաստեղծ սովետական պետության առաջին բացիկները, որոնք հրատարակվել էին Պետրոգրադի Ռ. Գոլիկե և Ա. Վիլբորգ ընկերության տպարաններում։ 1917 թ. վերջին լույս ընծայվեց Վ. Ի. Լենինի դիմանկարով առաջին բացիկլուսանկարը։ Իբրև քնօրինակ ծառայել է ցարական պահնորդական բաժնի քննչական գործի 20 տարվա վաղեմություն ունեցող լուսանկարը, քանի որ նորը չգտնըվեց։

1918 թվականից բացիկների հրատարակությամբ սկսեցին զբաղվել սովետական մի շարք կազմակերպություններ՝ թանգարանների ու հուշարձանների պահպանման գծով հատուկ բաժինը, քաղաքացիական պատերազմից հետո՝ Պետհրատը, 1925-ից՝ տարբեր թանգարաններ, այդ թվում՝ Տրետյակովյան պատկերասրահը և ՍՍՀՄ հեղափոխության թանգարանը։ Հայրենական պատերազմի տարիներին բացիկները սովետական մարդկանց արդար պայքարի ու խիզախման էին կոչում, ագիտացիոն մեծ աշխատանք կատարում թիկունքում ու ռազմի դաշտում։ Այնուհետև առաջնային խնդիր դարձավ ժողովրդական տնտեսության վերականգնման թեման։ 1969 թ. սկսվեց երկու խոշոր հրատարակչությունների գործունեությունը, «Պլանետան»՝ Մոսկվայում և «Ավրորան»՝ Լենինգրադում, որոնց աշխատանքի կարևոր ենթաբաժինն էր բացիկների հրատարակումը։ Ներկայումս լույս ընծայվող բացիկների գլխավոր խնդիրն է մեր երկրի խոշոր նվաճումների ցուցադրումը, ամբողջ աշխարհում խաղաղության գործի ամրապնդումը։

Երբ իրար կողքի ենք դնում ժամանակային զգալի տարբերությամբ հրատարակված մի քանի բացիկներ և հատկապես՝ միևնույն կառույցի, փողոցի «մանկական», «երիտասարդ» և «հասուն» տարիների լուսանկարները, ավելի է ընդգծվում փոստային պարզ ու հասարակ բացիկների ճանաչողական մեծ նշանակությունը։ Ահա նման փոքրիկ մի ճանապարհորդություն է մեզ ընձեռված հին Երևանի Աստաֆյան, այժմ՝ Աբովյան փողոցով։ Նայեք ուշադիր, մտովի քայլեք, փորձեք համեմատել հին ու նոր բացիկներին պատկերված կառույցները։ Իսկ փոստային բացիկները, ամենատարբեր հաղորդումներով «ծանրաբեռնված», ընտապում են աշխարհի մի ծայրից մյուսը, կտրում հազարավոր կիլոմետր ճանապարհներ ու փոխհաղորդակցելով տարբեր երկրների բնակիչներին, դրանք նըպաստում են տարբեր ժողովուրդների բարեկամության ու մերձեցման գործին։

**ԻԳՈՐ ՋԱՔԱՐՅԱՆ**
**ՌԱՖԻԿ ՀԱԿՈԲՅԱՆ**

# ԳԻՏԵ՞Ք, ՈՐ...

Հարմար տեղավորվում ենք աթոռներին. գլխավերևում լուսատախտակի վրա մակագրություն է հայտնվում՝ «Ամրացնել փոկերը»: Ուժեղ սլացք, և պատուհաններից երևում են արագորեն անհետացող տներ, բլուրներ, հեռավոր լեռների գագաթներ... Մենք թռչում ենք:

— Ինքնաթիռով,— մտածում եք դուք և սխալվում եք:

Մենք իսկապես թռչում ենք, բայց ընդամենը մեկ սանտիմետր բարձրության վրա: Դա ինքնաթիռ չէ, այլ՝ մագնիսաթիռ, մագնիսական կախովի ճանապարհով ընթացող վագոն:

Բոլորս ենք տեսել, թե ինչպես է մագնիսը ձգում երկաթը: Մագնիսաթիռի ռելսերը ոչ թե վագոնի տակ են, այլ՝ վրան, և նման են երկայնակի կտրված խողովակի, իսկ ակներ բոլորովին չկան: Վագոնի առաստաղին հատուկ մագնիսական հենարաններ են պատրաստված, որոնք մտցվում են ռելսախողովակի մեջ: Եթե ռելսերին էլեկտրական հոսանք տրվի, մագնիսական ուժը վեր կձգի մագնիսահենարաններն ու հետևաբար՝ ամբողջ վագոնը: Որպեսզի մագնիսները շատ ամուր չկպչեն ռելսին, անհրաժեշտ է ճըշգըրիտ որոշել ձգողական ուժը: Այդ աշխատանքը կոմպյուտերի գործն է, հենց նա է կառավարում կախոցի և վագոնի շարժման մեխանիզմները: Զգայուն տըվիչները՝ կոմպյուտերի աչքերը, հետևում են՝ ճեղք չկա՞ արդյոք մաշնիս-հենարանի և ռելսի միջև: Հենց որ մագնիսը մոտենում է ռելսին մեկ սանտիմետրից ավելի, կոմպյուտերի մեջ տվիչից ահազանգ է ստացվում՝ «Չափազանց մոտ է», և կոմպյուտերը ակնթարթորեն հրաման է արձակում. «Հոսանքը ռելսերում թուլացնել»: Մագնիս-հենարանների ձգողության ուժը ռելսերում թուլանում է, հենարանները հեռանում են ռելսից սահմանված սանտիմետրի չափով, և վագոնը սլանում է առաջ:

Ինչո՞վ է աչքի ընկնում մագնիսաթիռը: Նախ՝ արագությամբ: Այն գետնին չի կպչում, ռելսերին չի քսվում և կարող է սլանալ երեք-չորս անգամ ավելի արագ, քան ժամանակակից գնացքները: Արագությունը դեռ ոչինչ: Տրամվայներն ու էլեկտրագնացքները այնպես են ցընցվում , որ հնարավոր չէ կարդալ, ուր մընաց՝ գրել, բացի այդ էլ՝ բավականին աղմկոտ են: Իսկ մագնիսաթիռը անաղմուկ և բացարձակ սահուն տրանսպորտ է: Երկրորդ՝ այդպիսի տրանսպորտը շրջապատը չի աղտոտում, որովհետև էլեկտրականությամբ է շարժվում:

Արագ, անաղմուկ, հարմարավետ և շրջապատի համար անվտանգ. ահա թե ինչ է մագնիսաթիռը: Այդ պատճառով էլ այն միանգամայն հարմար քաղաքային տրանսպորտ կարող է դառնալ ապագա՝ 21-րդ դարում: Նրա համար թունելներ պետք չէ փորել, ինչպես մետրոյի, միայն սյուների վրա կառուցված տախտակամածներ են հարկավոր: Մագնիսաթիռը երկրորդ հարկ է զբաղեցնելու և չի խանգարելու մյուս տրանսպորտային տեսակներին:

Սակայն մագնիսաթիռ սարքելն այնքան էլ հեշտ գործ չէ: Արդեն մի քանի տարի է, ինչ սովետական գիտնականները աշխատում են այդ բնագավառում: Սկզբում վագոն սարքեցին, որը կարծես հրվում էր ռելսերից, բայց փորձարկումները ցույց տվեցին, որ ավելի հաստատ և հուսալի է կախովի սիստեմը, երբ հենարանները ձգվում են դեպի ռելսերը՝ ներքևից:

Ներկայումս փորձնական նմուշը առաջին մեկնարկի է պատրաստվում 600 մետրանոց փորձակայանում: Այս հնգամյակում կսկսվի նրա փորձնական 3 կիլոմետրանոց ուղերթը՝ Երևանից ոչ հեռու:

Մեզ մնում է սպասել, թե երբ ինքնաթիռի սանդուղքին նմանվող աստիճաններով կբարձրանանք մագնիսաթիռ և կսլանանք աշխատանքի կամ քաղաքից դուրս, իհարկե, չմոռանալով ամրացնել ամրագոտիները:



Ի. ՇԱԴՐ. «ՍԱԼԱՔԱՐԸ ՊՐՈԼԵՏԱՐԻԱՏԻ ԶԵՆՔՆ Է»

Գլխավոր խմբագիր՝ **ՊԵՐՃ ԶԵՅԹՈՒՆՑՅԱՆ**

Խմբագրական կոլեգիա՝ ԴԵՎՐԻԿՅԱՆ Գ., ԽԱՆՋՅԱՆ Գ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՅՈՂՅԱՆ Լ., ՇԵԿՈՅԱՆ Ա., ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍԱՐԳՍՅԱՆ Դ., ՍԻՄՈՆՅԱՆ Կ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ., ՏՈՆՈՅԱՆ Թ. (պատասխանատու քարտուղար), ՔԵՉՕՂԼՅԱՆ Մ. (գեղարվեստական խմբագիր):

Տեխնիկական խմբագիր՝ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Շ., սրբագրիչ՝ ԳԵՎՈՐԳՅԱՆ Գ.:

**ԻՆԴԵՔՍ՝ 77806 ԳԻՆԸ՝ 15 ԿՈՊ.**